
Փետրվարի 23-ը
Սովետական բանակի
և ռազմածովային
նավատորմի օրն է
ՊԵՏՐՈՍՅԱՆ ՎԱՀԱԳՆ
Երևանի № 83 դպր., 4-րդ դաս.

ՍԱՄՈՒԻԼ ՄԱՐՇԱԿ

# ՄԵՐ ԳԵՐԲԸ



Ամեն պետություն իր գերբն էր կերտում,
Երանգավորում սեփական ոճով,
Ընձառյուծն առնա, արծիվն առարկու,
Եվ առյուծն առա՝ զսպած մռունչով:

Այդպես է եղել օրենքն աշխարհի,
Տերությունները դավերով լեցուն,
Անեղ ժանիքով վայրի գազանի
Քինոտ նայել են իրենց դրացուն:

Ու մերթ գազանը, մերթ թռչունը չար
Ծանկ ու մագիլով բռնել են տեգեր,
Եվ չարագուշակ կանչերով նրանց
Աշխարհի վրա ամպեր են չոքել:

Քերծերում թեև արծիվներ չկան,
Բայց որքան շատ են նրանք գերբերում,
Եվ առյուծները ամենքից լքված
Լոկ գերբերից են աշխարհին նայում:

Ո՛չ հզոր արծիվ, ո՛չ էլ բորենի:
Մենք գերբ կերտեցինք արևի շողով,
Եվ նկարեցինք հասկեր ցորենի
Ու զարդարեցինք մուրճ ու մանգաղով:

Չենք առաբեկում ուրիշին գերբով:
Բայց պաշտպանում ենք հզոր տունը մեր
Ու ծաղկեցնում ենք արդար քրտինքով
Արևից էլ վառ խնդությունը մեր:

Չարը չի կարող սասանել երբեք
Մեր միությունը եղբայր ազգերի,
Մուրճ ու մանգաղի կամքը պողպատե,
Միասնությունը հասկ ու աստղերի:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

**ՍԱՆԴՐՈ ԶՈՒԼՀԱԿՅԱՆ**




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մայրս մի հորեղբայր ուներ, որին հորից չէր տարբերում, հարազատ պապի չափ սիրելի էր նա մեզ: Նրա տարերքը շախմատն էր: Շախմատը թևի տակ հայտնվում էր մեր տանը և հայացքով փնտրում իր օրվա «զոհին», համոզված, որ հաղթելու է: «Զոհը» երեխաներից մեկնումեկն էր:

Խաղի ընթացքում ժպիտը քարանում էր նրա դեմքին և հաճախ նրա լարվածությունը փոխանցվում էր մեզ: Իրեն թույլատրելի էր ձեռք տալ, անգամ բարձրացնել և կրկին տեղը դնել խաղաքարերը, իսկ մենք աստված չաներ հանկարծ ձեռք դիպցնեինք որևէ քարի ու չխաղայինք՝ մեզ պարտված էր հայտարարում և խառնում խաղաքարերը:

Հինգերորդ դասարանում ես արդեն կարողանում էի ոչ-ոքիներ պոկել պապիցս, իսկ չանցած մեկ տարի, պարզվեց, որ հեշտությամբ կարող եմ հաղթել նրան:

Մի անգամ պապիս տվեցի «Սկսնակ շախմատիստի գիրքը»: Նա նայեց վաթսունչորս քառակուսիներով սև-սպիտակ վանդակներին և միանգամայն անկեղծ ասաց.

— Չլինի՞ մեր խաղը տեսել են...

Զգացի, որ չի կատակում, չուզեցի սիրտը կոտրել.

— Գուցե տեսել են, պա՛պ:

Շատ արագ նա տիրապետեց համարյա բոլոր հայտնի սկզբնախաղերին՝ սկսած «սիցիլիական պաշտպանությունից» մինչև «թագուհու գամբիտը»: Իսկ երբ աշխարհի շախմատի թագի համար Տիգրան Պետրոսյանը խաղում էր Միխայիլ Բոտվիննիկի հետ, պապս վերջնականապես դարձավ մոլի շախմատասեր: Ուր գնար՝ շախմատը թևի տակ էր, ականջը՝ ռադիոյին:

Երբ մրցամարտը վերջացավ, պապս մտավ տուն, շախմատը դրեց սեղանին և թեթևացած ու հպարտ հայտարարեց.

— Հաղթեցինք...

Իրավամբ կարելի էր համարել, որ Պետրոսյանի հաղթանակի մի փոքրիկ մասն էլ պապիս էր պատկանում, իր անքուն գիշերների, իր ոգևորության ու ապրումների շնորհիվ:

...Նոր էի վերադարձել պիոներական ճամբարից: Մայրս ասաց, որ պապս հիվանդ է: Ես շախմատն առա թևիս տակ, գնացի պապիս տուն: Պառկած էր անկողնում, գունատ, աչքերի փայլը մարել էր: Մոտեցա, բռնեցի դալուկ ու տաք ձեռքը: Ինձ քաշեց, մոտեցրեց իրեն և շուրթերը թեթևակի հպեց ճակատիս:

— Պա՛պ, շախմատ խաղա՞նք,— ավելի շուտ պապիս վիճակն ստուգելու համար, ասացի ես: Վայրկենապես աչքերը փայլատակեցին, շուրթերին ժպիտ հայտնվեց

— Շարի՛ր:

Տատս փորձեց արգելել, ասելով, որ նրան չի կարելի շարժվել, բայց պապս արդեն նստել էր անկողնում և գիրկն առել շախմատը: Տատս շալը գցեց պապիս ուսերին, ու «մրցամարտը» սկսվեց: Սկզբում խաղում էի ի միջի այլոց, միտումնավոր սխալներ թույլ տալով, հետո զգացի, որ պապս միանգամայն պատրաստ է գրոհի: Շուտով նա ինձնից շահեց երկու զինվոր, ապա՝ նավակ: Եվս մի քանի քայլ, և իմ դիրքերը լիովին քայքայվեցին:

Պապիս ոգևորությանը չափ չկար, նա դեն էր նետել շալն էլ, վերմակն էլ ու ձեռքերն էր իրար շփում, երբեմն էլ կատակով թեթևակի հրում գլուխս՝ «դժվար է, հա՞...»

Դա եղավ նրա «կարապի երգը», հրաժեշտը իր այնքան սիրելի շախմատին...

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

# ՔԱՐԵ ԴՐԱԽՏ

Իմ քարակուռ,
Իմ քարքարոտ,
Քարե սարսուռ,
Քարե կարոտ:
Քարե ծաղիկ,
Քարե մրմուռ,
Քարե ալիք
Ու քարե գուռ:
Քարե մի վանք,
Քարե մի տուն,
Քարե ճախրանք,
Քարե միտում:
Դու պարզ ու բարդ
Ոգու ճկար...
Քարե դրախտ,
Դրախտի քար:
Չարչարվեցիր,
Չչարացար,
Քար կտրեցիր,
Չքարացար:
Տապալվեցիր,
Նորից ելար,
Սպանվեցիր,
Բայց չմեռար:
Դար ու դարեր
Քար տաշեցիր,
Մահիդ վրա
Քար քաշեցիր:
Տքնեմ այսպես,
Դպիր դառնամ
Բառիդ վրա,
Մամուռ դառնամ
Ու գիր դառնամ
Քարիդ վրա:

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ




Ես երբեք որսի չեմ գնացել: Ո՛չ թե, որ բնություն չեմ սիրում կամ չեմ սիրում թափառել: Հասկանում եմ նաև, որ որսորդությունը սպորտ է, զբաղմունք է, սակայն ինձ չի գրավում: Թերևս այն պատճառով, որ քաղաքաբնակ եմ ու մանկուց մեր տանը կենդանիներ եմ տեսել և որ ծնողներս երբեք առանց օգնություն ցույց տալու չեն անցել վիրավոր կենդանու կողքով: Առաջին սիրած գիրքս եղել է Վլադիմիր Դուրովի «Իմ գազանները», որ այժմ էլ պահվում է ընտանեկան գրադարանում: Փաստորեն այդ գիրքն ինձ առաջին անգամ ծանոթացրեց կենդանավարժությանն ու կրկեսին:

Վլադիմիր Դուրովը զարմանալի մարդ էր: Նա խտրություն չէր դնում կենդանիների և մարդկանց միջև: Ջանում էր ըմբռնել նրանց բնավորությունը, անկեղծ ու ազնիվ վարվել նրանց հետ: Ազնիվ պետք է լինել միշտ և ամենուրեք, նաև՝ կենդանիների հետ: Նրանք հիանալի են հասկանում, թե երբ են խաբում և երբ են ասում ճշմարտությունը: Իհարկե, ոչ թե խոսքերից են հասկանում, այլ հոգեվիճակից: Պատահում է շատ անտրամադիր եմ լինում, բայց ժպտում եմ, փաղաքշական բառեր ասում իմ շանը՝ Դանին: Նա չի հավատում, կանգնում է, մռայլ նայում ինձ և մոտ չի գալիս: Կամ եթե մոտենում է, հոգոց է հանում և դունչը ծնկիս դնում. իբր, դու ժպտա՛, ժպտա՛: Բայց ես հո գիտեմ, որ սիրտ չունես ծիծաղելու: Ես քեզ այնպե՛ս եմ կարեկցում:

Նրանց անհնար է խաբել, նրանք այնպե՛ս նրբորեն են որսում կեղծիքը: Այդ մասին ինձ շատ են պատմել գազաններ վարժեցնողները: Ահա ընկճված է արտիստը, և կրկեսի հրապարակում կենդանիները շարժվում են լարված, ծանրորեն: Ընդհանրապես ով պատրաստվում է գործ ունենալ կենդանիների, ասենք՝ շների հետ, պետք է լինի տոկուն, համբերատար և բարի: Մեր կրկեսում աշխատում են Նադեժդա և Ալեքսանդր Պոպովները, կենդանիների հետ նրանք ցուցադրում են «Կատվի տնակը» և «Բժիշկ Այբոլիտի ընդունարանում» համարները: Նրանց շներն իրենք են նետվում կրկեսի ասպարեզ, այրվում են աշխատանքը շուտ սկսելու անհամբերությունից, որովհետև նրանց կատարած բոլոր հնարանքները ստեղծվել են համբերությամբ և բարությամբ: Ահա թե ինչու են նրանց ելույթները զվարճալի, համարձակ, հաճելի են դիտվում:

Ինձ հաճախ են հարցնում, թե ունեցե՞լ եմ շուն «Ինձ մոտ արի, Մուխտար» կինոնկարից առաջ: Նախ ասեմ, որ այդ շունը իմը չէ. նրա հետ ծանոթացել եմ միայն նկարահանման հրապարակում: Այո՛, մեր տանը շուն միշտ եղել է: Ընդհանրապես կենդանիների հանդեպ ունեցածս սիրուն պարտական եմ հորս:

Պատերազմից առաջ մեր ընտանիքն ապրում էր մի փոքրիկ սենյակում, և մեր շունն էլ շատ հարմար էր մեր բնակարանին՝ նույնպես փոքր-մոքր էր: Նրան կոչում էինք Ծատիկ: Ազնվացեղ էր՝ տերյեր: Հայրս կրկեսի արտիստներից մեկի համար կատակային կարճ համարներ էր գրել: Առաջին հաջող ելույթից հետո նա այդ շնիկը մեզ նվիրեց: Եվ քանի որ շատ փոքրիկ էր, Ծըստիկ կոչեցինք: Նա դարձավ մեր ընտանիքի անդամը: Հիշում եմ, ինձ բանակ ճանապարհեցին երեքով՝ հայրս, մայրս և Ծատիկը: Եվ երբ ռազմաճակատում տնից նամակ էի ստանում, անպայման Ծատիկից ողջույն էր լինում: Կովից հետո, երբ տուն վերադարձա,

նա ինձ իսկույն ճանաչեց, թեպետ քանի՜ տարի էր անցել: Այնքան անկեղծորեն և բուռն ուրախացավ, որ ես նույնիսկ վախեցա՝ հանկարծ սրտի հետ բան չպատահի:

Շները երեխաների նման են: Ընդունակ չեն շողոքորթելու և եթե ուրախանում են, ապա՝ անկեղծ: Թե՛ երեխային, թե՛ շանը չի կարելի խաբել ժպիտով, փաղաքուշ խոսքով, եթե ներքուստ վերաբերմունքդ այլ է: Երեխան կճչա, ետ կքաշվի, շունը լավագույն դեպքում կհեռանա և կպառկի անկյունում, վատագույն դեպքում՝ կհաչի կամ կկծի ոտքդ: Շատիկը մեր տանն ապրեց տասնվեց տարի: Եթե սա վերածենք մարդկային տարիքի, կստացվի մոտ 80—95 տարի: Նրա մահը բոլորիս համար մեծ կորուստ էր: Ցավոք, շները կարճ են ապրում և այդ պետք է իմանալ, եթե ուզում ես բարեկամություն հաստատել չորքոտանու հետ:

Ժամանակ անց Չելյաբինսկում, հյուրախաղերի ժամանակ, մի կենդանավարժ ինձ շան ձագ նվիրեց: Եվ հույժ խորհրդավոր հայտնեց, որ շնիկը՝ փոքստերյերի և աֆրիկյան հազվագյուտ մերկաշան խառնուրդ է: Այն ժամանակ ես չգիտեի և սպասում էի, թե երբ է նա մեծանալու, իսկ շնիկը դարձավ աշխույժ և բոլորովին էլ ոչ թե մերկ, այլ, ընդհակառակը՝ փրչոտ, բակապահ շուն: Ես անընդհատ մտածում էի՝ ի՛նչ անուն տալ: Աֆրիկացի՞: Բայց իբրև մականուն չէր սազում: Հետո կարճ կոչեցի Աֆրիկ: Մեր տանը նրան հաջորդեց մի տաքսա, ավելի ուշ հայտնվեց սպանիել՝ Լորդ մականվամբ: Դա ի ծնե դաժան շուն էր: Տանը բոլորին կծել էր, բայց մեղքերս գալիս էր դուրս շպրտել: Նա գառան պես հեզանում էր միայն այն ժամանակ, երբ մեր տուն էր գալիս կինոռեժիսոր Լեոնիդ Գայդայը: Նրան հարգում էր ահա թե ինչու:

Մի օր Գայդայն այցելեց մեզ: Լորդը հաչոցով նետվեց նրա վրա: Գայդայն անմիջապես չորեքթաթ շարժվեց շան կողմը: Լորդը նայեց նրան, խաղաղվեց և հնազանդ պառկեց խսիրին: Այդ օրվանից նրանք բարեկամացան:

Լորդը մեքենայի տակ ընկավ: Մենք ողբացինք նրա կորուստը, և ես խոստացա, որ այլևս մեր տուն շուն չի մտնի: Սակայն տառացիորեն մի քանի օր հետո տղաս ինչ-որ տեղից բերեց կեղտակոլոր, նիհար, փոքրիկ մի շնիկ: Աղբարկղի մոտ նստած, նա ցրտից դողալիս է եղել: Այսպես տանը հայտնվեց Կուտյան, որն այժմ յոթ տարեկան է:

Եվ, վերջապես, Դանը, որ մոսկովյան կըրկեսի «արտիստներից» էր: Նա պարգևված է, շների յոթերորդ ցուցահանդեսում արժանացել է մեդալների:

Ծառայողական շների նման Դանն անցել է վարժեցման լրիվ դասընթացը: Ընդհանրապես, կարծում եմ, որ ցանկացած շունը՝ մեծ թե փոքր, պետք է հնազանդվի և անտրտունջ ենթարկվի տիրոջը: Տհաճ է, երբ մարդ քայլում է փողոցով, երկար վզափոկով շան հետ, իսկ նա աջ ու ձախ է նետվում, կամ թե՝ տերը վզափոկն արձակել է, կանչում է շանը, իսկ նա չի մոտենում: Իհարկե, մեղավորը շունը չէ. նրան չեն սովորեցրել հնազանդվել, երբ դեռ քոթոթ էր: Եվ իզուր: Ահա այդպիսի տերերի պատճառով էլ տեղի են ունենում ամեն տեսակ անախորժություններ՝ շունը կարող է վախեցնել երեխաներին, վայր գցել ծերունիներին, հետքեր թողնել մանկական հրապարակում կամ ծաղկամարգում:

Եվ ահա թե էլ ինչ կուզենայի ասել: Շատ ցավալի է, երբ երեխաները անտարբեր են անցնում շքամուտքի փակ դռների մոտ մլավող կատվի ձագերի կողքով: Իսկ ինչու՞ չբացել դուռը և ներս չթողնել նրան: Գուցե նա մրսե՞լ է և ուզում է տաքանալ, գուցե պատահաբար ծլկե՞լ է փողոց և հիմա ոչ մի կերպ չի կարողանում ներս մտնել: Ես չեմ կարող հասկանալ՝ ինչպես են անտարբեր անցնում բնից ցած ընկած ծիտիկի մոտով, ինչպես են քար նետում աղավնիների, ագռավների վրա: Ինչպե՞ս են չնչին անհնազանդության համար ծեծում շանը, կամ թե քացի տալիս կատվի վրա: Նման դեպքեր դժբախտաբար լինում են, և ոչ հազվադեպ: Չի կարելի անտարբեր լինել ուրիշների վշտին ու դժբախտությանը, առավել ևս՝ երբ նրանք ավելի փոքր են և ավելի անպաշտպան: Եվ, իհարկե, ես խստորեն կպատժեի մերձմոսկովյան Վիդնոյե քաղաքի այն երեք տղաներին, որոնք բարբարոսաբար ծեծելով, սպանել են սենբեռնարին՝ մարդամոտ ու բարյացակամ մի շան: Այդ մասին անցյալ տարի գրեցին թերթերը: Ի՞նչ է ստացվում: Սենբեռնարները փրկում են հազարավոր մարդկանց, իսկ այդ երեքը որոշում են սպանել փրկարարների փառապանծ ցեղի ներկայացուցչին, որպեսզի կաշին քերթեն: Դաժանությունն ու անհոգությունը երբեք էլ ուժի հատկանիշ չեն եղել: Դա թուլության և նողկալի դաստիարակության արգասիքն է: Պետք է սիրել ու պահպանել բնությունը, իսկ մեր պստլիկ եղբայրներն էլ հենց մեր շրջակա բնաշխարհի մասն են:

# ԵՐԲ Է ԵՐԳՈՒՄ ՍՈԽԱԿԸ



Իհարկե՝ գիշերը:

Սակայն Լիպեցկի մարզի Դոլգորուկովո գյուղում սոխակը գեղգեղում է, երբ կովը կաթը տալիս վերջացնում է:

Բանն այն է, որ սոխակը... էլեկտրոնային է: Այն պատրաստել է Դոլգորուկովոյի միջնակարգ դպրոցի աշակերտ Ալեքսանդր Ռիբինը:

Հապա պատկերացրեք. կովերի նախիրը վերադարձավ արոտավայրից: Կիթի ժամն է: Չմոռանանք, որ բոլոր կովերի կիթի ժամը վրա է հասնում միաժամանակ: Կթվորուհին կովի կրծքին է ամրացնում դյուրալյումինե բաժակիկները, որոնք խողովակներով միացած են ռետինե հաստ կաթնատարին: Նրա մի հատվածը ապակուց է պատրաստված, որ երևա, թե ինչպես է հոսում կաթը: Կաթնատարի ծայրը դրվում է բիդոնի մեջ, միացվում է էլեկտրականությունը, աշխատում է վակուումային պոմպը, և կաթը սկսում է հոսել խողովակներով: Որոշ ժամանակ անց, կաթնատարի ապակե հատվածը նորից թափանցիկ է դառնում. նշանակում է կովի կաթը սպառվել է: Էլեկտրականությունն անջատում են, և կիթն ավարտված է: Ահա և վերջ: Թվում է էլ ասելիք չկա...

Իսկ, այնուամենայնիվ, սոխակն ի՞նչ կապ ունի սրա հետ: Կովի լսողությո՞ւնն ենք ուզում նրբացնել: Ասենք, ի՞նչ կա որ. կովը, ինչպես այժմ պնդում են որոշ գիտնականներ, երաժշտասեր կենդանի է: Հաճելի ձայների ազդեցության տակ նա ավելի շատ է կաթ տալիս: Սակայն երբ Սաշա Ռիբինը իր սոխակն էր պատրաստում, նրան բոլորովին այլ հարց էր հետաքրքրում:

1979 թվականին «Ռադիո» ամսագիրը ռադիոսիրողներին կոչ արեց օգնել գյուղատնտեսությանը: Ամսագիրը միանգամից առաջարկեց մի քանի խնդիր շուրջը մտածել և դրանց մեջ էլ՝ թե ինչպես արագ ու անսխալ որոշել կիթի ավարտը:

Շատ գաղափարներ ծնվեցին, բայց հիմնականում առաջարկվեցին երեք սկզբունքային տեսակետ: Առաջին՝ կիթի ավարտը որոշել ըստ կաթի հոսքի ճնշման: Երկրորդ հիմք ընդունել կոնտակտային մեթոդը՝ հաշվի առնելով կաթի էլեկտրահաղորդչականությունը: Եվ, վերջապես, Սաշայի առա-

ջարկը՝ սարքի կառուցվածքում օգտագործել ֆոտոռելե: Ռադիոխմբակի անդամները ու ղեկավարը, որ ֆիզիկայի ուսուցիչ Վլադիմիր Նիկոլաևիչ Ժիճկինն էր, խորհրդակցեցին, հաշվի առան բոլոր «դեր» և «դեմ» կողմերը, և ընտրեցին վերջին՝ Սաշայի առաջարկը:

Անհամբերությամբ էին երեխաները սպասում ապրիլ ամսին: Երբ ճանապարհները չորացան, նրանք իրենց պատրաստած սարքը տարան ֆերմա՝ կթվորուհիներին ցույց տալու:

— Ահա տեսե՛ք,—բացատրում էր Սաշան:—Կաթնատար ապակե խողովակին մի լրացուցիչ խողովակ է միացվում: Նրա մի ծայրին տեղադրված է «լուսատու աչքը»՝ սովորական մի լամպ, իսկ մյուս ծայրին՝ ֆոտոռելեն: Լամպը մշտապես վառվում է: Քանի դեռ կաթը հոսում է խողովակով, լույսը չի ընկնում ֆոտոռելեի վրա, քանի որ կաթը թափանցիկ չէ: Երբ կաթը սպառվում է, լույսն ընկնում է ռելեի վրա ու գործի գցում, սարքի վրա վառվում է լուսային ազդանշանը: Բացի այդ, սկսում է երգել «սոխակը»: Եթե չես տեսնի, ապա կլսես: Իսկ եթե ո՛չ կտեսնես, ո՛չ էլ կլսես, միևնույն է, կիթը ավտոմատ կերպով կդադարեցվի, գործի կդրվի անջատիչ ծորակը:

— Է՛յ, տղանե՛ր, ո՛չ մի ծորակ էլ պետք չէ,— վախեցան կթվորուհիները:— Սոխակը թող իր համար երգի, իսկ անջատելը՝ մենք ինքներս կանջատենք:

— Ինչո՞ւ,—զարմացան երեխաները:— Չէ՞ որ ձեր աշխատանքն ավելի քիչ կլինի:

— Քիչը՝ քիչ կլինի, բայց ձեռքով ավելի հուսալի է... Կարող է հանկարծ սարքը կովից կաթը լրիվ չվերցնի, ժամանակից շուտ անջատվի: Նախքան անջատվելը մենք ինքներս կստուգենք, այդպես ավելի հաստատ է:

Դժվար գործ դուրս եկավ կթվորուհիներին համոզելը: Տեխնիկայի նկատմամբ նրանց թերահավատությունը պատճառներ ուներ: Պարզվեց, որ առաջ էլ են փորձել ֆերմայում տեղադրել ազդանշանիչ սարքեր: Ավելի պարզ ի՞նչ կարող էր լինել՝ կաթնատար խողովակում տեղադրել են երկու էլեկտրոդ: Քանի կաթը հոսում է խողովակով՝ շղթան փակ է: Հենց որ կաթը սպառվում է՝ շղթան անջատվում է և կիթը ավտոմատ կերպով դադարում է: Բայց ցավն այն է, որ կաթի մեջ էլեկտրոդները արագ օքսիդանում են կամ էլ ծածկվում կաթի չոր փառով, ու սարքը դադարում է աշխատելուց: Ստացվում էր, որ կովի կաթը սպառվում է, բայց ո՛չ սարքը, ո՛չ էլ կթվորուհին տեղյակ չեն լինում: Ահա թե ինչու կթվորուհիները սկզբում անվստահությամբ լսեցին երեխաների առաջարկը:

— Մի խոսքով, մենք ինքներս կանջատենք: Իսկ դուք, ավելի լավ է մի հարմարանք ստեղծեք, որն իմաց տա, թե բիդոնում ինչքան կաթ կա: Թե չէ պատահում է չես նկատում ու կաթն արդեն թափվում է...

Այսպես ասացին կթվորուհիները, իսկ նրանց խոսքն այստեղ օրենք է: Ֆերմայից վերադառնալով, Սաշան մտածում էր, թե ինչպես կարելի է բիդոնում հետևել կաթի պարունակությանը: «Ի՞նչ էլ անես, կոնտակտային մեթոդից լավը չկա... Ինչի՞ց է, որ առաջ ոչինչ չի ստացվել. նրանից, որ խողովակի մեջ էլեկտրոդները իրար շատ մոտ էին տեղադրված, համարյա իրար կպած, և նրանց միջի օքսիդի շերտն էլ խափանում էր սարքը: Իսկ լայն բիդոնում էլեկտրոդները միանգամայն կիրառելի են»:

Սաշայի սոխակը, ինչ խոսք, զիջում է իսկականին: Փետուրների, կտուցի, աչքերի փոխարեն նա ունի ընդամենը բարձր հաճախականության գեներատոր: Այն կազմված է երեք մուլտիվիբրատորներից: Հենց նրանց օգնությամբ էլ սոխակը երգում է: Առաջին մուլտիվիբրատորը միացված է բարձրախոսի հետ և տալիս է մինչև 2 հազար հերց տատանումներ: Երկրորդը պարբերաբար միացնում, գործի է գցում առաջինին: Իսկ երրորդը, ժամանակ առ ժամանակ, երկրորդ մուլտիվիբրատորի տրանզիստորի շղթային է միացնում լրացուցիչ դիմադրություն: Դա նշանակում է, որ այդ ժամանակ փոփոխվում է նրա հաճախականությունը: Ահա այդպես էլ նմանակվում է սոխակի դայլայլը: Իհարկե, այն այնքան էլ դյութիչ չէ. ականջդ կախ չես լսի...

Սակայն մի առավելություն ունի Սաշայի սոխակը, որը չունի աշխարհում ուրիշ ոչ մի սոխակ: Այդ սոխակն իսկական օգտակար գործ է անում, աշխատում է: Իսկ թե այդպես է, ուրեմն և իսկական է այդ սոխակը:

**Ա. ԱՐԽԱՐՈՎԱ**
**Լ. ՄԱԿԱՐՈՎԱ**

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

## ՁՄՌԱՆ ԵՐԱԶ

Համրացել են դաշտերն ասես,
Ո՛չ խոսում են, ո՛չ լսում,
Ոտից գլուխ ճերմակ հագել,
Կանաչ երազ են տեսնում:
Այդ երազում հոգնած թևով
Սև սարյակն է գալիս տուն,
Ծաղիկները հազար ձևով
Շքերթի են պատրաստվում:
Արեգակն է իջնում սարից՝
Շաղերի մեջ ժպտալով,
Հին տերևն է ընկնում ծառից՝
Նոր տերևին տեղ տալով:
Այդ երազը կամաց-կամաց
Պիտի բացվի երկնքով,
Պիտի լցվի դաշտը կանաչ
Մանուշակի բուրմունքով:
—Ժամանակն է,— հողը կասի
Ու խոր քնից կարթնանա,
Կանաչ աշխարհն այդ երազի
Վառ ու կարմիր երբ դառնա:

Նկ. ԱԴԵԼ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ

## Ինչու՞մ ե

Երկու օր առաջ հյուր էի գնացել մորաքրոջս տուն: Այնտեղ ծանոթացա 7-րդ դասարանցի մի աղջկա հետ: Զրույցի ժամանակ պարզվեց, որ նա դպրոցում միաժամանակ ընդգրկված է երեք՝ նկարչության, լողի և ասեղնագործության խմբակներում:

— Իսկ դու լողի մրցումներին երբևէ մասնակցե՞լ ես:

— Ո՛չ:

— Նկարչական աշխատանքներդ ցուցադրվու՞մ են:

— Ո՛չ:

— Իսկ ասեղնագործած աշխատանքնե՞րը:

— Նույնպես ո՛չ:

Պարզ չէ՞, որ նրանից ո՛չ նկարչուհի դուրս կգա, ո՛չ աչքի ընկնող լողորդ կամ ասեղնագործող: Ուրեմն իմաստ ունի՞ երեք խմբակում ընդգրկվել և ոչ մի տեղ շոշափելի հաջողությունների չհասնել: Ավելի լավ չէ՞ ուժերը կենտրոնացնել մի տեղ, որտեղ հաջողության հասնելու հավանականությունն ավելի մեծ է:

ԱՆԱՀԻՏ ՋԱՐԳԱՐՅԱՆ
Երևան, № 138 դպրոց,
8-րդ դասարան

# Պարապ խանէք




Անահիտ Զարգարյանի հարցին դժվար է կտրուկ պատասխան տալ: Լողի խմբակում ընդգրկվողը եթե նպատակ է դնում այդ ասպարեզում հասնել չեմպիոնության, իհարկե, ուժերը պետք է կենտրոնացնի սպորտի այդ մարզաձևում, որպեսզի բնածին ձիրք ունենալու դեպքում, ուզած արդյունքին հասնի: Իսկ եթե մեկը սիրում է նկարել և ուզում է նկարչական խմբակում նկարչական արվեստի այբուբենին ծանոթանալ ու միաժամանակ լողի խմբակի պարապմունքներին է մասնակցում, որ լողալ սովորի, նաև ուզում է ասեղնագործություն սովորել և տանն իր համար ասեղնագործել, կարծում ենք այդտեղ պախարակելի ոչինչ չկա: Ի՞նչ վատ կլինի, երբ և՛ նկարես, և՛ նվագես, և՛ պարես, և՛ երգես, ծով գնաս՝ լողաս, կարողանաս քեզ համար ասեղնագործել, կարել, քո ծննդյան օրը ընկերներիդ առջև սեղանին դնես քո թխած թխվածքը: Լավ է այս բոլորը սովորել և անել, եթե դրանք չեն ազդում քո հիմնական պարտականությունների՝ դասերիդ վրա:

«ՊԻՈՆԵՐԻ» խմբագրություն



# ԿՐԿԻՆ ՄԿՆԵՐԻ ՈՒ ԿԱՏՈՒՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կենդանիների կյանքում երբեմն այնպիսի դեպքեր ու միջադեպեր են պատահում, որ դժվարանում ես հավատալ: Լինում է և այնպես, որ վաղեմի անհաշտ թշնամիները ընկերանում և նույնիսկ բարեկամաբար սնվում են միևնույն ափսեից: Ահա մի այդպիսի, կարծես թե, անհամատեղելի բարեկամություն է պատկերված տպագրված լուսանկարում: Այն դիտելիս, ուզես թե չուզես, հիշում ես մանկուց լսած զրույցներն ու առակները մկների և կատուների թշնամանքի մասին: Այս երկու հավատարիմ բարեկամները՝ Բորիսկա կատուն և Մուսկա մուկը ապրում են Նիժնի Տագիլում, իրենց վարժեցնողի՝ Տանյա Վոլկովայի տանը:

ՀՈՎԻԿ
ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹՅՈՒՆ

Քեռի Գևորգը կրկեսում էր աշխատում: Փոքրիկ քաղաքում բոլորը ճանաչում էին նրան: Շատ դերասաններ էին գալիս-գնում, հայտնի վարժեցնողներ, աշխարհահռչակ ծաղրածուներ, բայց մենք կրկես էինք գընում քեռի Գևորգին տեսնելու: Ոչ թե նրա համար, որ նա մեր քաղաքից էր, մեր սեփական դերասանը, այլ որ նրան տեսնելուց հետո, մարդիկ իրենց երջանիկ էին զգում: Արածն էլ մի մեծ բան չէր կարծես: Առաստաղից կախված էին երկու ճոճանակներ: Մեղմ երաժշտության տակ մանեժ էին դուրս գալիս քեռի Գևորգն ու մորաքույր Անահիտը: Գույնզգույն լույսերի մեջ կայծկըլտում էին նրանց հագուստները: Քեռի Գևորգը երջանիկ, լուսավոր դեմքով նայում էր հանդիսատեսներին, հպարտ-հըպարտ մոտենում առաստաղից կախված պարանին, սկսում մագլցել: Սակայն կեսին չհասած, ձեռքերը թուլանում էին, ցած էր սահում ու շինծու հուսահատությամբ նայում չորս կողմը: Փորձում էր մի անգամ նս՝ ապարդյուն: Հուսահատությունը դառնում էր ծայրահեղ, դեմքի երջանկությունն անհետանում, մկանները թուլանում՝ միանգամից ծերանում էր: Եվ ահա այդ վճռական պահին Անահիտ մորաքույրը հնարամտորեն հանում էր թաշկինակը, ժպտալով նետում քեռի Գևորգին: Քեռի Գևորգն օդում ճարպկորեն որսում էր այն, տանում շուրթերին, համբուրում, հոտ քաշում, նորից համբուրում, ապա նետում՝ ետ մորաքույր Անահիտին: Այսպես նրանք մի քանի անգամ նետում էին միմյանց և քեռի Գևորգը մեր աչքի առաջ նորից վերափոխվում էր, դառնում երիտասարդ, ուժեղ, աչքերը փայլում էին, դեմքը ողողվում էր լույսով: Մոտենում էր մորաքույր Անահիտին և նրանք, կողք-կողքի կախված պարաններով, երկու աղավնիների նման բարձրանում էին վեր ու ճոճվում ճոճանակների վրա: Այնպես էին ճոճվում, այնպես երջանիկ էին ճոճվում, որ այդ երջանկությունը տարածվում էր ողջ դահլիճով մեկ և մարդիկ սկսում էին ժպտալ:

Առաջին հայացքից թվում էր, թե արտակարգ բան չկա: Բայց ոչ մի հանդիսատես չէր կարողանում անտարբեր դուրս գալ դահլիճից, երկար ժամանակ հիշում էին նրանց ու ժպտում: Ինչ հռչակավոր դերասաններ էլ որ գային, միևնույնն է, մարդիկ կրկես էին մտնում նաև քեռի Գևորգին ու մորաքույր Անահիտին տեսնելու և միշտ հեռանում էին երջանկության զգացումով:

Մեզ համար, անհիշելի ժամանակներից, նրանք ամեն օր կրկնում էին նույն շարժում-




Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

ները, նույն ձևով ժպտում, նույն ձևով ճոճվում ճոճանակների վրա և ոչ իրենք էին ձանձրանում, ոչ հանդիսատեսները: Նրանք մեր աչքի առաջ ծերանում էին, բայց մենք այդ չէինք նկատում:

Ահա և մի օր մորաքույր Անահիտը հիվանդացավ: Քեռի Գևորգին նոր ընկերուհի տվեցին՝ երիտասարդ, գեղեցիկ, ալացիկ: Լուրն անմիջապես տարածվեց քաղաքով մեկ: Բոլորը գնում էին տեսնելու քեռի Գևորգին ու նոր աղջկան: Ես էլ գնացի և, ինչպես միշտ, նստեցի առաջին շարքում: Լսվեց մեղմ երաժշտություն, լույսերի շատրվանի միջով մանեժ մտան քեռի Գևորգն ու երիտասարդ աղջիկը: Միանգամից զգացի, որ ծերունին է՝ վտիտ, կորամեջք, մկանները թուլացած, ոտքերը հազիվ էր քարշ տալիս: Բարձրացրեց հայացքը, ժպտաց հանդիսատեսին, մոտեցավ պարանին, փորձ արեց մագլցելու, թուլացած ետ սահեց և վախեցած նայեց չորս կողմը: Աղջիկը հոյակապ շարժումով հանեց թաշկինակը, նետեց նրան: Նա մի կերպ որսաց այն, մոտեցրեց շուրթերին, դողդողացող շուրթերով համբուրեց և գցեց աղջկան: Աղջիկը հպարտ, վարժ շարժումով այն մոտեցրեց շուրթերին, ապա նորից նետեց... Վերջապես քեռի Գևորգը մոտեցավ աղջկան: Աստված իմ, ոտքերը հազիվ էր քարշ տալիս, դեմքի ժպիտը շինծու էր, ամեն ինչ սովորական ու հասարակ: Չկար ամեն անգամվա երջանկությունը, որը նրա ներսից դուրս գալով ողողում էր ողջ դահլիճը...

Մոտեցավ աղջկան, բռնեց ձեռքից ու նրանք շարժվեցին դեպի պարանները: Այլևս երկու աղավնիներ չէին... Քեռի Գևորգն այնպես էր գնում, կարծես անտեսանելի մի ձեռք հրելով տանում էր:

Ինչ-որ մեկը սուլեց: Երկար ու անպատկառ սուլոց էր: Լռություն տիրեց: Պարանին չհասած կանգ առան: Երաժշտությունը դադարեց: Քեռի Գևորգը մի պահ շփոթված չորս կողմն էր նայում... ապա բաց թողեց աղջկա ձեռքը և գլխիկոր հեռացավ:

Երկար ժամանակ դահլիճը լուռ էր: Ոչ ոք ձայն չէր հանում, նույնիսկ չէին շարժվում: Բոլորը տխուր էին, որովհետև նրա հետ գնում էր անհիշելի ժամանակներից մինչև մեր օրերը հասած կենդանի ու թանկ մի բան, որն այլևս հուշ էր դառնում:

— Ա[illegible] Գլեքով եղբայրներ...— հնչեց հաղորդավարի ձայնը, և Գլեքով եղբայրները, երկար մտրակները առած, խուժեցին արենա:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ



# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 3. ԽՄԲԻ ԾՆՈՒՆԴԸ

Ալպինիստներիս հաճախ հարցնում են.

— Ի՞նչ կա սարերում՝ հավերժական ցըրտի ու վտանգների մեջ, ինչու՞ եք բարձրանում լեռները:

Ալպինիստներից ոմանք ասում են, թե սիրում են լեռների գեղեցկությունը, ոմանք էլ, թե՝ քաշում է վտանգները հաղթահարելով սեփական «եսը» հաստատելու ռոմանտիկան... Մի խոսքով, միասնական պատասխան չկա: Ինձ համար, օրինակ, ամենագրավիչը լեռները նվաճող մարդիկ են՝ ալպինիստները: Այդ տիպի մարդկանց ամենից լավ նկարագրել է Ջեկ Լոնդոնը իր պատմվածքներում ու վիպակներում: Ինձ թվում է, որ ամեն մի ալպինիստի մեջ մի Սմոք Բելյու կամ Բոցավառ Արշալույս է նստած: Ալպինիստին թվում է, թե ինքը երբեք չի սխալվի, իսկ լեռների բարկությունը միշտ կշրջանցի իրեն:

Գնում է, որովհետև ինչպես ասվում է երգում.

«Լեռներից լավ միայն աննվաճ լեռներն են»:

Հարցնողներից, թե՝ «ինչու՞ եք լեռները բարձրանում» ալպինիստներր երբեմն վրեժ են լուծում շատ անսովոր ձևով. համոզում են, իրենց հետ տանում լեռները, նրանց ևս վարակելով «ալպինիզմի բացիլով»:

1975 թվին՝ համալսարանում, մարզիչների դպրոցն ավարտելուս տարին, ալպինիստ տղաներից ու աղջիկներից ես ստեղծեցի Հայաստանի քարանձավներն ուսումնասիրողների խումբը:

Աղջիկների ներկայությունը սկզբում ինձ վախեցնում էր: Ես գյուղում էի մեծացել ու դաստիարակվել նահապետական սովորությունները չմոռացած միջավայրում, իսկ այնտեղ աղջիկների նկատմամբ թերահավատություն գոյություն ուներ: Ալպինիստ տղաների շրջապատում աղջիկների մասին կար այն կարծիքը, թե նրանք բնավորությամբ ավելի ռոմանտիկ լինելով, հաճախ լեռներում վտանգը մոռանալով, տարվում են շըրջապատի գեղեցկությամբ: Բայց կար և այն կարծիքը, որ աղջիկները տղաներից ավելի քաջ են:

*Սկիզբը՝ 1983, № 1-ում։*

Ինչ որ է, դեռ ժամանակ էր պետք, մինչև որ համոզվեի, թե որքան օգտակար է խառը խմբի ստեղծումը. աղջիկների ներկայությամբ տղաները դարձան ավելի ձիգ, աշխատում էին ցույց տալ իրենց լավագույն կողմերը: Աստիճանաբար մեզանից յուրաքանչյուրը ապետական բնավորություն ձեռք բերեց: Իսկ աղջիկնե՞րը: Դժվարանում եմ ճիշտը բնորոշել, բայց կարծում եմ, որ ամենից առաջ ազատվեցին այն քնքշանվաղ բնավորությունից, որը աղջիկներից շատերի թերություններից է:

Հետաքրքիր էր աղջիկներից երկուսի՝ խումբ ընդունվելու պատմությունը:

Մի օր Արմենը գնում է հանրային գրադարան քարանձավների մասին հարկավոր գիրքը կարդալու: Գիրքը կարդալիս ամենահետաքրքիր էջում մի երկտող է գտնում. «Մենք ցանկանում ենք Հայաստանում կազմակերպել անձավագիտական խումբ: Ցանկացողները զանգահարեն այսինչ համարով»:

Արմենը զանգահարում է: Պարզվում է, որ բժշկական ինստիտուտից Մարինե անունով մի ուսանողուհի եղել է Բուլղարիայի քարանձավներում և այնքան է հրապուրվել, որ ընկերուհու հետ որոշել են մեզ մոտ էլ քարանձավներ հայտնաբերող խումբ ստեղծել: Եվ քանի որ չգիտեին, թե ում կարելի է հավաքագրել, ուստի գրքի մեջ երկտող են թողել: Նրանց հաշվարկը ճիշտ էր. վաղ թե ուշ քարանձավներով հետաքրքրվողը պետք է կարդար այդ գիրքն ու գտներ երկտողը:

Խումբն արդեն կար, և Մարինեն ու ընկերուհին ուրախությամբ միացան մեզ:

Սկզբում ինձ մի ուրիշ բան էլ դուր չէր գալիս. մերոնք շատ էին գնում տուրիստական արշավների: Ես լեռներում շատ էի տեսել ինքնակոչ տուրիստների, որոնց ալպինիստները նայում էին մատների արանքով: Ես էլ էի այդպես վերաբերվում նրանց. մյուսների նման գտնում էի, որ տուրիստներն ալպինիստների շարքերն անցնելով, իրենց հետ բերում են անփութություն և անկարգապահություն, որոնք շատ փորձանքների պատճառ են դառնում:

Ժամանակը ցույց տվեց, թե ես որքան սխալ էի: Հայրենի բնության ու պատմական հուշարձանների հետ մշտական շփումը խորացրեց մայր ժողովրդի հանդեպ ունեցած սերը, որն էլ, ի վերջո, պայմանավորեց այն մեծ հաջողությունը, որը ուղեկցեց մեր հետագա աշխատանքներին:

*(Շարունակելի)*



ՅՈՒՐԻ
ՍԱՀԱԿՅԱՆ

Ջուրը ափին նշան բռնում,
Ծպպացնում էր իր համբույրով,
Ողողվում էր մարմինը իմ
Առավոտյան ջրի բույրով:
Կաթիլ-կաթիլ հոսում էին
Լցվում իմ մեջ անտառ ու լեռ...
Քանի տարով հիմա հեռու՝
Նրանց համը զգում եմ դեռ:

Հոգնած մի հավք
Նստեց ծառին:
Անսիրտ մի ձեռք
Իջավ քարին...
Քարը թռավ,
Հավքը թռավ...
Ու տխրություն թառեց ծառին:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ
ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ՔԱՂԱՔ ԵԿԱԾ ՔԱՄԻՆ

Սարից թռավ անմեղ քամին,
առած բույրը խոտ ու ծաղկի,
մեծ քաղաքին թարմ շունչ բերեց
սարից թռած անմեղ քամին։
Ծոցը լցրած ծաղկի բույրով,
քաղաք մտավ ջահել քամին,
եկավ ընկավ փորձանքի մեջ
ծաղկի բուրմունք բերած քամին։
Զուլալ հայացք ուներ քամին,
թևեր ուներ ջինջ ու հստակ,
եկավ փոշու թակարդն ընկավ,
շաղ ու շողից ծնված քամին։
Ոտքերի տակ ընկավ մարդկանց,
ջինջ աչքերը լցված փոշով,
սիրտը լցվեց ու սևացավ
ոտքերի տակ ընկած քամին։
Շնչասպառ եղավ շոգից,
նորից սարերն ուզեց թռչել,
բայց կոտրել էր թևերը թոզը
սարից թռած անմեղ քամին։
Փողոցներում գարշ ու տխուր
թռավ այս կողմ, թռավ այն կողմ
և կեսօրվա պատերի տակ
շունչը փչեց սարի քամին։
Սիրտը ջինջ էր օդի նման,
եկավ, մեռավ քաղաքի մեջ,
բայց թե հոգով սարում մնաց
շաղ ու շողից ծնված քամին։

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Նկարը՝ հեղինակի

# ԵՐԳ ՔԱՄՈՒ ՄԱՍԻՆ

Քամին սարում բույն է դրել
արտերի մեջ ու թփերում,
քամու վճիտ ձվերի մեջ
ձագերն արդեն չեն համբերում։
Արտից թռավ ձագը քամու,
բաց թևերին՝ դող ու սարսուռ,
կանգնեց քարին, ծառին թռավ,
թավալ տվեց անհոգ ու ծույլ։
Քնեց մի պահ, ելավ տեղից,
վազեց հեռու ուրախ ճիչով,
փուշը ծակեց ոտքը քամու,
երբ որ անցավ դաշտի միջով։
Քամին վազեց հոգսոտ ճամփով
ու փոշոտեց դեմքը մի լավ,
քամին մրսեց, երբ ձորն իջավ,
շոգեց, երբ որ վերն ելավ։
Վազվզում է խելառ քամին,
ուր էլ գնա, չի մոլորվում,
մեծանում է շունչը նրա
սարերի մեջ ու ձորերում։
Քամին սարում բույն է նստում
քարերի մեջ ու թփերի.
քամու վճիտ ձվերի մեջ
փոքրիկներ կան նորից։

# ԱՍՏԵՐՈԻԴ ԵՎ ԱՍՏԵՐՈԻԴՆԵՐԻ ԳՈՏԻ

Աստերոիդ անվանումն ունի հունական ծագում: Թարգմանաբար նշանակում է աստղանման կամ աստղակերպ: Եվ իսկապես, աստերոիդները երկնքում իրենց արտաքին տեսքով նմանվում են աստղերի, չընայած բնույթով ոչ մի ընդհանուր բան չունեն աստղերի հետ: Դրանք Արեգակի համակարգին պատկանող տարբեր չափսերի մարմիններ են, որոնք հաճախ անվանվում են նաև փոքր մոլորակներ: Այդ անվանումը շատ ավելի ճիշտ է բնութագրում նրանց, որովհետև նրանք ևս պտտվում են Արեգակի շուրջը և ի տարբերություն խոշոր մոլորակների, ունեն շատ փոքր չափսեր: Ամենախոշոր աստերոիդների թվին են պատկանում, օրինակ, Ցերերան, Պալլադան, Յունոնը, Վեստան և այլն, որոնց չափսերը հասնում են մի քանի հարյուր կիլոմետրի, սակայն ավելի հատկանշական են մեկից մինչև մի քանի տասնյակ կիլոմետր շառավիղ ունեցողները: Համեմատության համար պետք է հիշել, որ խոշոր մոլորակների շառավիղները չափվում են հազարավոր և տասնյակ հազարավոր կիլոմետրերով:

Փոքր մոլորակներին հատուկ է պայծառության պարբերական փոփոխությունը: Դա բացատրվում է նրանց անկանոն, բեկորաձև կառուցվածքով և սեփական պըտույտով: Քանի որ աստերոիդները սեփական լույս չունեն և պարզապես անդրադարձնում են Արեգակի լույսը, ապա իրենց պտույտի ընթացքում դեպի Երկիր են դարձնում մերթ ավելի հարթ և մեծ մակերեսով մասը, մերթ ավելի փոքր մասը, որը և պատճառ է դառնում անդրադարձվող լույսի ավելացմանն ու նվազմանը:

Մոտավորապես երկու հազար աստերոիդներ մտցվել են ցուցակների մեջ, և բավականաչափ լավ հայտնի են նրանց ուղեծրերը, սակայն անհամեմատ ավելի մեծ է այն աստերոիդների թիվը, որոնք շատ փոքր չափսեր ունեն և չեն համարակալվել: Հայտնի աստերոիդների մեծ մասի ուղեծրերը բավականին մոտ են իրար և գտնվում են Մարսի և Յուպիտերի ուղեծրերի միջև: Աստղագիտական գրականության մեջ փոքր մոլորակների այդ կենտրոնացումն ստացել է աստերոիդների գոտի անվանումը: Այն փաստը, որ այդ գոտում բոլոր աստերոիդները պտտվում են միևնույն ուղղությամբ և ունեն անկանոն, բեկորանման ձև, որոշ գիտնականների հիմք է տվել առաջ քաշել մի վարկած, ըստ որի դրանք հանդիսանում են միլիարդավոր տարիներ առաջ գոյություն ունեցած մի խոշոր մոլորակի բեկորները: Այդ վարկածի համաձայն Ֆաետոն անունն ստացած այդ մոլորակը կործանվել է ներքին լարվածության ուժերի հսկայական աճի պատճառով: Սակայն գիտնականների շրջանում դեռևս վեճեր են գնում, և այդ հարցը առայժմ միարժեք պատասխան չի ստացել:

Մի շարք աստերոիդներ Արեգակի շուրջը պտտվում են չափազանց ձգված ուղեծրերով: Դրանց թվում կան այնպիսիները, որոնք հասնում են փոքր մոլորակների համար անսովոր մեծ հեռավորությունների կամ ընդհակառակը՝ ընդհուպ մոտենում են Արեգակին: Իր արևամերձ կետում Արեգակին ամենից շատ մոտենում է Իկարը, որը հենց այդ պատճառով էլ ստացել է իր անունը: Նա անցնում է Արեգակից ընդամենը 28 միլիոն կիլոմետր հեռավորության վրա: Իկարը պատկանում է նաև վերջին տասնամյակներում Երկրին առավել մերձեցած փոքր մոլորակների թվին: 1968 թվականի ամռանն այն անցավ Երկրից ընդամենը 8 միլիոն կիլոմետր հեռավորության վրա:

**ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու**

# ՎԱՐԴԵՏ ՍՈՒՏԱՍԱՆԸ



ՄՈՐՈՒՍ ՀԱՍՐԱԹՅԱՆ

*(ժողովրդական զրույց)*

— Է՜հ, քեզ ի՞նչ կա որ, փափախդ թեք դրած, օրվա մեծ մասը՝ գեղամիջին: Մի երկու ժամ՝ այգում, բոստանում, թե ի՞նչ ես անում, չգիտեմ, որովհետև մեծ մասը հարսներն են անում, և պառկում ես ծառի տակ քնում: Իսկ իմ ձեռքերը ոնց որ ուղտի ոտքի տակ կամ լուծը հարած եզան ուս, մեջը՝ լիքը փուշ, մեջքս էլ՝ միշտ քամի ու անձրև թակած կամ արևից այրված: Դաշտը տվել ես ինձ, այգին ու բոստանը քեզ վերցրել, հարսներին ու երեխաներին բանեցնում ես, եկեղեցու բակում սուտ ու ղորթ անելով, սուտը ղորթի տեղ անցկացնելով, գալիս ես ծառի տակ քնում, ոնց որ Մանթաշովի տղեն լինես:

— Ա՜յ ախպեր, քեզ քանի՞ անգամ եմ ասել, որ սուտ խոսելը մաճ բռնելուց, գերանդի ու մանգաղ բռնելուց շատ դժվար է: Քո գործը չարչարանք է, իմը՝ խելք ու շնորհք: Ամեն մարդ իր գործն ունի, քոնը հասարակ գեղական գործ է, իմը՝ դժվար, կրակ, շատ դեպքում, երբ ասածդ սուտը ճշմարտի տեղ չի անցնում, խելք պիտի մաշես, լեզու պիտի թափես, դա հո գութանի մաճը չի՞, որ բռնես ու եզները քշեն:

Կրտսեր եղբոր այս հանդուգն բացատրության պատճառով այս անգամ շատ հոգնած երկրագործ եղբայրը՝ հողի ազնիվ մարդը, հացով երդվող, հաց ստեղծող քրտնախաշ գեղջուկը, այնքան զայրացավ, որ առաջին անգամ լուրջ ըմբոստացավ, հայտարարելով (մի քիչ էլ մեծ հարսի՝ այսինքն իր կնոջ դրդումով), որ վաղվանից դաշտ չի դուրս գա, փոխարենը եղբայրը թող գնա և արորի մաճը բռնի: Փոքր եղբայրը չառարկեց, ասելով. «Եթե կարծում ես մաճ բռնելը նախշ

ու նկար է, վաղն իրիկունը կգաս, կտեսնես, թե ինչ որակի վար եմ արել»: Տան անդամները այդ ևս համարեցին «քամուն տված խոսք»:

Լուսաստղը նոր էր դուրս եկել, երբ փոքր եղբայրը տրեխները հագավ, ուտելիք վերցրեց, ճիպոտն առավ և դուրս եկավ տնից:

Հողագործ ավագ եղբայրը այդ օրը ուշ ելավ տեղից, թեև արթնացել էր սովորական ժամանակին: Տրեխները հագնելիս բարձր ձայնով ասաց. «Հիմա կիմանաս, որ հացը ծառից չեն քաղում, որ թանը մածունից է լինում»: Բայց և այնպես տանը նախաճաշի նստած, անհանգստանում էր, թե արդյոք ինչպե՞ս է վարի վիճակը, հիմա ինչքա՞ն վարած կլինեն: Քիչ հետո Վարդան քեռին գնաց գեղամեջ:

— Բարև, ստծու բարին,— եկեղեցու բակում նստած մարդիկ զարմացան, որ մաճկալ Վարդանին այսօր, այս ժամին տեսնում են գեղամիջին:

— Վարդա՛ն, էդ ո՞նց էղավ, որ էսօր տանն ես, բա էսօր ո՞վ է մաճկալը:

— Մեր Գարեգինը:

Բոլորը մեկեն զարմացան:

— Էդ ո՞նց ես մաճը վստահել Գարեգինին, ինքն էլ ո՞նց է համաձայնել, որ մեկ օր մեջքն ու ճակատը քրտնախաշ անի:

Մեկը չարամտորեն խնդալով, վրա բերեց.

— Հիմի երեք հոտաղներին Գարեգինի փչոց-քամին տարած կլինի:

Մեկ ժամ դեսուդենից խոսեցին, պատմություններ արին, վերջում հողի Վարդանը զրույցի արանքում դարձավ իր շուրջը նըստածներին, թե՝

— Տղե՛րք, երեկ, որ ջաղացի գլխի հարթակի արտում վար էի անում, մեկ էլ մի կատվի ձեն լսեցի: Դես նայեցի, դեն նայեցի, տեսա երկնքից է գալիս:

Ամեն կողմից վրա թափվեցին, թե.

— Ի՞նչ է, ախպորդ հացը կտրե՞լ ես, Վարդո՛, այդ քեզանից չի...

Վարդոս կմկմաց.

— Դե որ չեք հավատում, ի՞նչ անեմ, ա՛յ մարդիկ, ես իմ լսածն եմ ասում...

Վարդանը մի քիչ նստեց, երբ որ տեսավ տեղից բարձրացող մարդիկ կան, ինքն էլ ամոթահար տեղից ելավ, գլխիկոր գնաց դեպի տուն, ետևից լսելով.

— Սուտն էլ պետք է խելքի մոտիկ լինի:

Տնեցիները ինչ խոսում էին, պատասխան չէին ստանում Վարդանից, միայն մեկ-մեկ լսվում էր նրա մոմռոցը, թե. «Վարը հիմի ի՞նչ վիճակի է»:

Երեկոյան գութանավորները վերադարձան: Վարն արել էին, ոնց որ պետք էր: Այդ մասին եղբորը տեղեկացնելուց հետո, խոսքաշեն Գարեգինը սկսեց հարցուփորձ անել գեղամիջից: Նկատեց, որ ավագ եղբոր բերանը չի բացվում, որ խոսի, մտածեց, որ երեկվա իր պատասխանից էր դեռ առնըված: Բայց Վարդանը բացվեց և պատմեց, թե ինչ վիճակի մեջ է ընկել գյուղամիջում: Գարեգինը բարձր-բարձր ծիծաղեց.

— Ոչի՛նչ, առավոտը դու կգնաս վար կանես, ես կգամ գեղամեջ, գործը կշտկեմ:

Հաջորդ օրը Գարեգինը, իր սովորական ժամին, եկեղեցու բաց գավիթում, ծեր ու գործից ազատ գյուղացիների շարքում էր: Խոսում էր ամեն ինչի մասին և լսում ուրիշների զրույցները: Մեկ էլ Գարեգինի նման մեկը դիմեց նրան, թե.

— Ձեռքերդ բա՛ց արա, տեսնենք փուշիկներ կա՞ն...

Լռության մի կարճ պահ, և Գարեգինը դարձավ բոլորին, թե.

— Տղե՛րք, էրեկ չէ մյուս օրը, մեր Վարդանին ու գութանավորին կեսօրվա ճաշը տանելիս, երկնքից մի կատվի ձեն առա, ականջիս չհավատացի (ամեն կողմից լըսվեցին փռթկոցները, Գարեգինս, ուշադրություն չդարձնելով, շատ լուրջ շարունակեց).

— Դես եմ նայում, դեն եմ նայում՝ անտերի ձենը գալիս է երկնքից: Արտին էի մոտեցել, նորից հազիվ լսելի, դարձյալ նույն ձենը հասավ ականջիս: Ձեռքս դնեմ ճակատիս, մի լավ նայեմ երկնքի կապույտին, տեսնեմ անտեր ուրուրը, կատվին առած ճանկերի մեջ, վեր է բարձրանում:

Բոլորը լռեցին և հալևորներից մեկը դարձավ շուրջը նստածներին ու կանգնածներին.

— Երեկ էն խեղճ անմեղի վրա ծիծաղեցինք... Դե նրան որտեղի՞ց Գարեգինի շնորհքն ու աչքերը, այնքան է գետնին նայել, որ չէր փահմել գլուխը բարձրացնի նայի երկինք, տեսնի ինչը ինչոց է:

Երեկոյան Գարեգինը գյուղամիջից եկավ, եղբայրը՝ հանդից: Գարեգինը պատմեց, թե ոնց է գյուղամիջում նրան պարզերես արել:

— Տեսնո՞ւմ ես, որ ես քո գործը կարողանում եմ անել, դու իմը՝ ոչ,— վերջում պարծեցավ վարպետ սուտասանը:

— Հա՛, ա՛յ ախպեր,— խոստովանեց մաճկալ եղբայրը,— տեսա համոզվեցի, որ սուտ ասելն էլ է փեշակ, ես էդ փեշակի տերը չեմ... Գողությունը փեշակ չի՞, փեշակ է, էդ փեշակի տերն էլ չեմ... Էլ ասելու բան չունեմ քեզ, ասածիս վրա գնա միտք արա:

# ԱՆՓՈԽԱՐԻՆԵԼԻ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ

Մոսկվայի կոնսերվատորիայի գիմնորական ֆակուլտետի ուսանող էի: Պրոֆեսոր Ն. Պ. Իվանով-Ռադկևիչը՝ իմ գործիքավորման դասատուն, Արամ Իլյիչին հրավիրեց ավարտական քննության փորձին, որի նյութըն էր Խաչատրյանի ջութակի կոնցերտի գործիքավորումը փողային նվագախմբի համար և դրա ղեկավարումը: Նա սիրով ներկա գտնվեց այդ կատարմանը և առաջին բանը, որ ասաց, հետևյալն է. «Ես իմ բոլոր գործերը կարող էի պատկերացնել փողային նվագախմբի կատարմամբ, բացի ջութակի կոնցերտից»:

Հուզիչ էր իմ առաջին տպավորությունը. հմայիչ, առինքնող, դեմքի արտակարգ արտահայտությամբ, անսպասելի բարի ու սիրալիր, նա իսկույն խոսեց իմ աշխատանքի մասին, բարյացակամորեն հետաքրքրվելով նաև իմ կյանքով: Մի երկու բառ ինձնից լսելուց հետո, իսկույն ասաց. «Ես էլ եմ Թիֆլիսեցի»:

Հենց Արամ Իլյիչն էլ եղավ պետական քննական հանձնաժողովի նախագահը և նրա ստորագրությունն է այսօր իմ դիպլոմի վրա:

Այն հեռավոր ժամանակ ո՛չ նա, ո՛չ էլ, մանավանդ, ես, չէինք կարող ենթադրել, թե երբևէ կապված կլինենք ստեղծագործական աշխատանքով: Բայց երևի երջանիկ աստղի տակ էի ծնված ես, և «Գայանեի» ու «Սպարտակի» վրա կատարած մեր համատեղ աշխատանքը մտերմացրեց մեզ: Նա դարձավ իմ ավագ ընկերը, որի հետ ամեն հանդիպումն ինձ համար մի դպրոց էր, շատ բան տվեց ու սովորեցրեց ինձ:

Մեծ երջանկություն էր ինձ համար մեր աշխատանքը «Գայանեի» բեմադրության վրա, ինչպես Երևանում, այնպես էլ Լենինգրադում՝ Գդանսկում, նաև «Սպարտակի» վրա՝ Վրոցլավում:

Առանձին հուզմունքի ու դժվարության առիթ էր տալիս «Գայանեի» երաժշտական խմբագրությունն ու բեմադրությունը: Բանն այն է, որ բալետի թերի լիբրետոն չէր նպաստում նրա հաջող բեմադրությանը և այդ էր պատճառը, որ այն երկար չէր մնում ոչ մեր, ոչ էլ արտասահմանյան բեմահարթակներում: Այդ միտքը անհանգստություն ու անհամարձակություն էր հարուցում իմ մեջ:

Սակայն Խաչատրյանը եռանդուն ու կըրքոտ էր կպել գործին: Նոր լիբրետոյի համար նոր կտորներ էր գրում, եղածի համար կապեր ստեղծում, փոխում էր տոնայնությունները, երբեմն կրճատում ավելորդ թվացող հատվածները: Երբեմն էլ այդ խոշոր փոփոխությունների կողքին մի փոքր կտորի տեղափոխության համար երեխայի պես խռովում էր ու բարկանում. «Այդ մեկը թույլ չեմ տա: Դա անհարգալից վերաբերմունք է երաժշտության նկատմամբ»: Բայց հետո իսկույն հանգստանում էր, իր անսահման հնարավորություններով հանճարեղ մի ելք գտնում, նոր կտոր գրում, հարմարեցնում:

Այսպիսի դեպքերից մեկի ժամանակ ես համարձակություն ունեցա նրան հարցնելու, թե՝ հապա ինչպես է հանդուրժել, որ Գրիգորովիչն ուզած ձևով վարվի «Սպարտակի» հետ: Նա զարմացած ինձ նայեց, կարծես մի պահ կարկամեց ու ասաց. «Հաղթողներին չեն դատում»:

Խմբագրման ժամանակ նա ամեն հարմար առիթով մի բան էր պատմում: Բալետը, որի առաջին տարբերակը «Երջանկություն» անունն էր կրում, պետք է բեմադրվեր հայկական արվեստի առաջին տասնօրյակի օրերին Մոսկվայում (1939): Ժողովրդական մեղեդիների վրա կառուցած այս բալետը շատ կարճ ժամանակում է ստեղծվել: Նրա հիմքը կազմող մեղեդիներից մի քանիսը Արամ Իլյիչը մանուկ հասակից գիտեր, մյուսներից մի քանիսը լսել է բանահավաքներից, ժողովրդական գործիքների նվագողներից, հատկապես դուդուկահարներից, և ուրիշներից:

Մի անգամ, Մոսկովյան հյուրախաղերի ժամանակ, հավանություն տալով նախերգանքի իմ մեկնաբանությանն ու կատարմանը, Արամ Իլյիչը միաժամանակ խնդրեց մի փոքր դանդաղեցնել երկրորդ մասի տեմպը, որ նրա կարծիքով ես իր ուզածից արագ էի վերցնում: Սակայն ներկայացումից մի քա-

նի րոպե առաջ նա շտապ մոտեցավ նվագախումբը դահլիճից անջատող պատնեշին ու մտերմիկ շշնջաց. «Պախարոնի մարշ չշինես, տո՞»:

Հրաշալի լսում էր նվագախումբը, ամենանրբին կերպով զգում էր յուրաքանչյուր գործիքի ամեն մի երանգը, կարողանում էր սրամտորեն բացատրել իր մեկնաբանությունն ու հասնել իր զգացածի կատարմանը: Դժվար էր փորձել նրա ներկայությամբ: Իսկ նա սիրում էր ներկա գտնվել փորձին: Երբ նրան իր գործերի պրեմիերաներին էինք հրավիրում, բարկացած ասում էր. «Ինձ պրեմիերայի հրավիրել պետք չէ, ես առանց ձեր հրավերի էլ կարող եմ գալ, դուք ինձ 5—6 վերջին փորձերին հրավիրեցեք, որպեսզի ես աշխատեմ, ավելիքս ասեմ ու հաստատ համոզված լինեմ, որ երաժշտությունս այնպես կհնչի, ինչպես ես եմ ուզում»:

Նրա պահանջկոտությունը չափազանցության էր հասնում: Իր ծննդյան 70-ամյակի համերգներից մեկի փորձի ժամանակ դահլիճում նստած այնքան անգամ կանգնեցրեց նվագախմբին ու զանազան նկատողություններ արեց, որ այդ համերգների ղեկավար՝ Մեծ թատրոնի դիրիժոր Բորիս Խայկինը նրա հարցին, թե արդյո՞ք հասկանալի է իր ցանկությունը, իրեն հատուկ հումորով պատասխանեց. «Այո, հասկանալի է նաև այն, որ այլևս երբեք չեմ ղեկավարելու ողջ հեղինակների ստեղծագործությունները»:

Այս բոլորի հետ նա զարմանալի նրբանըկատ էր: Միշտ գտնում էր արտահայտության այնպիսի ձևեր, որ ոչ ոք իրեն վիրավորված չզգար: Մի անգամ գործիքային մի սոլո փոխարինեց խմբական ունիսոնով, որովհետև կատարողին չէր հաջողվում մաքուր հնչեցնել, բայց ձևացավ, իբր ստեղծագործական նոր միտք է հղացել և ավելի լիարյուն հնչեղության պահանջ ունի:

Երբեմն էլ սիրում էր փորձի ժամանակ լարվածությունը թուլացնելու համար անսպասելի սրամտել:

Սովորաբար ամեն համարից հետո, եթե ինքը որևէ դիտողություն չէր անում, ես էի հարցնում, թե՝ արդյո՞ք ասելիք չունի: Մի անգամ փորձի վերջում հարցրի. «Արամ Իլյիչ, որևէ ցանկություն ունե՞ք»: Նա ասաց. «Այո, ուրախությամբ մի բաժակ երեկվա մասրաջրից կխմեի»: Նկատի ուներ նախորդ օրը մեր տանը ճաշակած մասրաջուրը, որ նրան շատ էր դուր եկել:

Սիրում էր պատմել: Եվ տարված պատմում էր երաժշտական կյանքի նորությունների, հանդիպումների, այլ երևույթների մասին: Մի անգամ պատմեց, թե ինչպես եղավ, որ բեմ բարձրացավ որպես դիրիժոր. դա կատարվել էր հանպատրաստից:

1950 թվի փետրվարին ակադեմիկոս Վավիլովի հետ հանդիպումներից մեկի ժամանակ հայտարարված էր համերգ, որի ծրագրում նշված էին պարեր «Գայանե» բալետից և ջութակի կոնցերտի 2-րդ մասը: Արամ Իլյիչին մոտենում է Վավիլովն ինքը և խնդրում, որ կոմպոզիտորը անձամբ ղեկավարի իր ստեղծագործությունները: «Ես մի փոքր վարանեցի,— հիշում էր Խաչատրյանը,— բայց առաջարկը չափազանց գայթակղիչ էր: Եվ երեկոյան ես բարեհաջող կերպով չափ տվի ծրագրիս: Վավիլովը ջերմորեն շնորհավորեց ինձ և խոսք առավ, որ այսուհետև հանդես կգամ որպես իմ ստեղծագործությունների դիրիժոր: Այդ օրվանից ես անվերադարձ հիվանդացա դիրիժորությամբ»: Իսկ վերջերս ամենից հաճախ իր մանկությունն էր հիշում:

Հաճախ էր հիշում հորը, մի առանձին հաճույքով կրկնում նրա խոսքերը, որոնք հարուստ են եղել ասացվածքներով: Հաճախ էր գործածում նրանից լսած «Խոսքը կտուրը մի գցի» դարձվածքը: Շարունակ պեղում էր իր ազգային արմատները, որոնք այնքան վառ արտահայտված են նրա ստեղծագործության մեջ: Հիշում էր մանուկ հասակում տեսածն ու լսածը, կենցաղային պատկերներ, իրենց համեստ տունը:

Այն րոպեներին, երբ վերջին ճանապարհը ուղեկցեցինք նրան և կտակի համաձայն հանձնում էինք մայրենի հողին, երկրագընդի մյուս կիսագնդում նրա հայրենակիցները հնչեցնում էին նրա անմահ «Գայանեն»:

Հիմա էլ «Գայանեն» ղեկավարելիս ինձ թվում է, թե Խաչատրյանը մեզ հետ է: Թըվում է, թե նա դահլիճում է, առանձնանում է բոլորի մեջ իր արտաքինով, սևեռուն ուշադրությամբ: Թվում է, թե ներկայացումից հետո ուրախ, սիրալիր ժպիտով, դեմքի մանկական արտահայտությամբ կմոտենա նվագախմբի պատնեշին, շնորհակալություն կհայտնի նվագախմբին ու դիրիժորին, հետո կդառնա հոտնկայս շնորհակալ դահլիճին...

Ասում են, անփոխարինելի մարդ չկա:

Մի՞թե փոխարինելի են Գրիգոր Նարեկացին, Թորոս Ռոսլինը, Սայաթ-Նովան, Կոմիտասը: Այդ թվում՝ նաև Արամ Խաչատրյանը:

Նոր մեծությունը գալիս է ոչ թե փոխարինելու գնացածին, այլ գրավելու իրեն պատկանող տեղը:

ՀԱԿՈԲ ՈՍԿԱՆՅԱՆ
ՀՍՍՀ ժողովրդական արտիստ



ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## ՁՄԵՌ

Ցուրտ ձմեռն էլ կանցնի այս,
Ու գարունը կբացվի,
Ու կանաչը զմրուխտյա
Սար ու հովիտ կպատի:
Եվ գերող բույրը նրանց
Երգերիս հետ կթռչեն,
Անձրև դառած կիջնեն ցած,
Տեղատարափ կթափվեն:

## ԴՈՒ ԿԳԱՍ

Իմ լավ գարուն, դու կգաս,
Չես ուշանա, դու կգաս,
Ու խնդություն կբերես
Քո թևերով կանաչած,
Ու երազներ կցողես
Արշալույսներդ վառած:
Իմ լավ գարուն, դու կգաս,
Չես ուշանա, դու կգաս:

**ԱՐՄԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ**
Աշտարակի շրջան, Կարբիի դպրոց

Նկարները՝ ԼԵՎՈՆ ԱԼԹՈՒՆՅԱՆԻ

Երևանի № 114 դպր., 2-րդ դաս.





Կարդացեք ստորև տպագրված պատմվածքները և հիշեք, թե պատահե՞լ է ձեր կյանքում, որ ուզեցել եք ինքնուրույնություն հանդես բերել և անցանկալի հետևանքներ ունեցող ինքնագլխություն է դուրս եկել: Շարադրեք այդ և ուղարկեք խմբագրությանը: Այս համարից սկսած ամսագրի էջերում զրույց ենք բացում այդ հարցի շուրջը:

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅՈ՞ՒՆ... ԱՅՈ՛



Անունը Ալա էր, և քչերը գիտեին, որ դա ընդամենը Ալվարդի կրճատ ձևն էր և ոչ թե հանրահայտ Ալլան: Ու թեև նա առաջին դասարանցի էր, մայրը տանը նրան մենակ թողեց, իհարկե, լուցկին թաքցնելուց հետո: Մենակ թողեց կարճ ժամանակով:

Երբ զանգը հնչեց, Ալան կարծեց մայրն է, վազեվազ բացեց դուռը: Եկողը մորեղբայրն էր՝ մի կնոջ ու մի տղամարդու հետ:

— Ես հյուրեր եմ բերել,— ասաց մորեղբայրը, դեռ շեմքը չանցած:

— Համեցե՛ք,— արձագանքեց Ալան:

— Դու մենա՞կ ես տանը,— հիասթափվեց մորեղբայրը:— Իսկ մենք եկել ենք քաղցած:

— Ուտել եք ուզու՞մ...— Ալան վազեց խոհանոց:

— Մենք շատ սոված ենք,— ծիծաղելով նրա ետևից խոհանոց մտավ մորեղբայրը:

Հյուրերը նստոտեցին ճաշասեղանի շուրջը: Կինը թեթև, աշխույժ ճտպտում էր՝ «Այս ի՜նչ հրաշալի տուն է... Այս ի՜նչ հիանալի երեխա է»...

Երեխան ու մորեղբայրը սեղանին դրին պանիր, երշիկ, ձիթապտուղ: Ալան նայեց սեղանին.

— Վա՜յ... հա՜ցը...— վազեց բերեց նաև հացը, հետո ինքն էլ նստեց հյուրերի հետ, սկսեցին ուտել:

Կինը ուտում էր ու ճտպտում՝ «Այս ի՜նչ հիանալի պանիր է», «Այս ի՜նչ հիանալի երեխա է»:

Կարծես ամեն ինչ տեղը տեղին էր: Ալան հյուրերին ընդունել էր այնպես, ինչպես մայրն էր ընդունում: Բայց նա դեռ մտահոգ, ջանում էր հիշել, թե է՞լ ինչ կարելի է դնել սեղանին: Եվ ահա վեր թռավ, նորից խոհանոց վազեց, վերադարձավ՝ ձեռքին մի շիշ, և դրեց սեղանին.

— Սա ի՞նչ է,— հարցրեց մորեղբայրը, շշի ձևը ոգելից խմիչք չէր հիշեցնում:

— Ձկան յուղ,— պատասխանեց Ալան:

— Ի՞նչ... — զարմացավ մորեղբայրը:

— Այս ի՜նչ հիա... — բացականչությունը կիսատ թողեց կինը:

Լռությունը չէր խոսում հօգուտ ձկան յուղի:

— Ձկան յուղը խմում են սոված փորին, մինչդեռ մենք համարյա արդեն կշտացել ենք,— ասաց ճտպտան կինն ու քրքջաց:

Իսկ մորեղբայրը աշխուժացավ, շոյեց մորուքն ու դեմ տվեց գդալը:

— Լցրու... ձկան յուղ ես սիրում եմ:

Մյուս տղամարդն էլ խմեց, ծռմռեց բերանը, բայց ասաց.

— Ես էլ եմ ձկան յուղ սիրում...

Նրանք կարճ ժամանակով էին եկել, կշտացան ու գնացին: Ալան սեղանը հավաքեց, ափսեները լվաց, տեղավորեց: Մորեղբայրը հեռախոսով մորը տեղեկացրել էր Ալայի հյուրասիրության մասին: Մայրը եկավ շատ ուրախ: Երբ աշխատանքից հայրն էլ եկավ, մայրն ընդառաջ գնաց ու դեռ նախասենյակում նրան նույնպես ողջագուրեց.

— Գիտես ի՞նչ աղջիկ ունենք... Տեսնես հյուրերն ի՞նչ գոհ են գնացել... Ա՛յ ինքնուրույնություն եմ ասե՛լ...

# ԻՆՔՆԱԳԼԽՈՒԹՅՈ՞ՒՆ... ԱՅՈ՛



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Դասին ուշադիր չէր եղել, բացթողածը իմանալու համար դասընկերներից մեկի հեռախոսի համարը հավաքեց: Զբաղված էր: Նորից պտտեցրեց սկավառակը, այս անգամ ընկալուչի միջից ականջին հասավ խոսակցություն: Խոսափողն ականջին սպասեց՝ հույս ունենալով, թե ուր որ է կավարտեն, բայց տեսավ, չէ՛, ավարտելու միտք չունեն իրար հետ երկար-բարակ զրուցող տատիկները:

— Խնդրում եմ վերջացրեք և անջատեք, հա՞: Չեմ կարողանում միանալ ընկերոջս,— ասաց Վանիկը:

Կանայք վրա տվին:

Կանայք վրա տվին.

— Ուրիշի խոսակցությանն էլ ակա՞նջ ես դնում, չե՞ս ամաչում:

— Քեզ ո՞վ է այդպես դաստիարակել:

— Ո՞ր դպրոցում ես սովորում, ասա տեսնե՛մ:

Վանիկը չհասցրեց պատասխանել, հեռախոսն անջատվեց: Այնուհետև նրան չհաջողվեց ընկերոջ համարն հավաքել և դասերն իմանալ, որ պատրաստի:

Ընկալուչը դրեց տեղն ու քիչ անց, երբ կրկին վերցրեց, լսափողի մեջ այլևս ոչ մի ձայն չկար: Մի քանի րոպեից նորից փորձեց: Անօգուտ: Հեռախոսն անջատված էր: Պետք էր երևի խոսափողը տեղը դնել ու էլի սպասել: Բայց Վանիկը համբերություն չունեցավ: Զանգահարեց ու զանգահարեց, իրար ետևից, ու մեկ էլ որոշեց քանդել, իրարահան անել լսափողը, ինչպես որ երբեմն անում էր հայրը, զննում ներսը, տեսնում ինչն է խախտվել, շտկում ու հեռախոսը նորից խոսում էր: Քանդեց, ձեռնահարեց այս լարը, այն պտուտակը... պտուտակներից մեկն էլ դուրս թռավ կորավ, մեկն էլ ելավ տեղից ու նորից տեղը չէր ընկնում: Երկար չարչարվելուց հետո Վանիկը տեսավ գլուխ չի հանում, քանդածը մի կերպ հավաքեց, իր կարծիքով հավաքեց, և հեռախոսից հույսը կտրած, գնաց ընկերոջը հարևանի տանից զանգահարելու:

Երբ հայրը տուն եկավ և իմացավ, որ հեռախոսը չի աշխատում, հացի չնստեց, շտապեց հասկանալ խափանման պատճառը: Վանիկն, իհարկե, խափանումը վերացնելու իր փորձի մասին լռեց: Բայց սևուկ խաբարբըզանը կատարվածի մասին փսփսաց հորը:

Հայրը զայրացած դարձավ Վանիկին.

— Քեզ քանի՞ անգամ եմ ասել՝ ինքնագլուխ բաներ մի՛ անի:

Վանիկը սսկվեց մնաց. մի անգամ էլ այդպես փորձել էր հեռուստացույցը նորոգել, հրավիրված վարպետի գալուն չէր սպասել, մորից ծածուկ սկսել էր քչփորել, և նորոգող վարպետից այդ էլ ծածուկ չմնաց, նորոգման ծախսն ավելացավ:

— Սա եթե այսպես շարունակի ինքնագլուխ քիթն ամեն բանի մեջ խոթել, մի փորձանք կբերի իր կամ տան գլխին,— նորից անհանգստացան ծնողները, նորից նախատեցին Վանիկին, նորից արգելեցին մեխանիզմներին ձեռք տալ, քանի դեռ խելքը դրանցից բան չի կտրում:

Վանիկը ուռած-փքված քաշվել էր մի անկյուն և ամեն անգամվա պես կարծես զըղջում էր արածի համար: Բայց թե որքան լուրջ էր զղջում, հետո կերևար:





ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ծեն ու ծաղկուն երկիր էր Արարատյան դաշտավայրը, և այդ էր պատճառը, որ Վանի թագավորության հիմնադրումից հետո նրա արքաները ջանք ու եռանդ չէին խնայում այստեղ հաստատվելու համար: Մենուայի որդի Արգիշտիի (786—764 թթ.) օրոք նրանք ոչ միայն գրավեցին Այրարատյան աշխարհը, այլև քաղաքներ ու բերդեր կառուցելով՝ բնավորվեցին: Ամրացնելով թագավորության սահմանները, նոր ամրություններ կառուցելով և հները վերականգնելով, Արգիշտին Ասորեստանի դեմ մղած պատերազմից հաղթանակով վերադարձավ և մ. թ. ա. 776 թվ. Ազա երկրում հիմնեց իր հաղթության քաղաքը՝ Արգիշտիխինիլին, թողնելով սեպագիր արձանագրություն. «Խալդյան մեծությամբ Արգիշտին՝ Մենուայի որդին, ասում է. ամրոց հոյակապ կառուցեցի, հաստատեցի Արգիշտիխինիլի անունը: Հողն ամայի էր, ոչինչ այնտեղ կառուցված չէր: Գետից չորս ջրանցք անցկացրի, խաղողուտ և անտառ հիմնեցի, կատարեցի մեծագործություններ այնտեղ»:

Քաղաքը կառուցում էին բազմաթիվ ռազմագերիներն ու ստրուկները: Նրանք ուղտերով, ջորիներով ու եզներով օրնիբուն քար էին կրում, բարձրացնում պարիսպների, պալատների ու տաճարների պատերը:

Նրանց կատարած աշխատանքի ծավալի մասին թեկուզև հեռավոր պատկերացում կազմելու համար, ասենք, որ քաղաքի ավերակներից տարված քարերով են կառուցվել շրջակա տասից ավելի գյուղերի տների հիմնապատերը, բակերի պարիսպները, ինչպես և Հուսեյն Ղուլի խանի 1827-ին կառուցած Սարդարապատի ամրոցի դարպասները և այլն: Ասենք նաև, որ քաղաքի պարիսպների հաստությունը հասնում էր 3,5 մետրի, իսկ Արգիշտիի փորած հինգ հիմնական ջրանցքների ընդհանուր երկարությունը մոտ 40 կմ էր, իսկ միջին խորությունն ու լայնքը՝ 2-ական մետր:

Արգիշտիխինիլին կառուցվել, ընդարձակվել և բարեկարգվել է շուրջ 200 տարի և իր ժամանակի մեծ քաղաքներից էր, նշանավոր տնտեսական, մշակութային և կրոնական կենտրոն:

Քաղաքն արևելյան և արևմտյան բլուրների վրա ուներ երկու ամրա-

# ԱՎԵՐ



կուռ, եռապարիսպ ամրոց, ուր կային հացահատիկի և այլ մթերքների պահեստներ, գինու մառաններ, արհեստանոցներ, շքեղազարդ ու մեծահարուստ պալատներ, մեկ տասնյակի չափ տաճարներ:

Իսկ որքա՞ն էր այն ժամանակ Արգիշտիխինիլիի բնակչությունը: Ենթադրվում է, որ այնտեղ բնակվում էր շուրջ 30 հազար մարդ: Իր գոյության ողջ ընթացքում քաղաքի զարգացմանը զուգընթաց ավելանում էր նրա բնակչության թիվը: Բայց քաղաքին վիճակված չէր խաղաղ բարգավաճում:

Առաջավոր Ասիայում, երբ իր հաղթարշավն էր սկսել միդո-բաբելական և սկյութական հզոր միությունը, Վանի թագավորությունը իր մայրամուտն էր ապրում: Նվաճելով և իրար մեջ բաժանելով Ասորեստանը (605 թ.), նրանք հարձակվեցին Վանի թագավորության վրա, որն իր վերջին ուժերը հավաքելով հակահարված տվեց ասպատակիչներին, բայց 590 թվ. ընկավ: Թշնամին հրով ու սրով անցավ թագավորության տարածքով, այրեց ու մոխրացրեց, կողոպտեց շեն բնակավայրերը, այդ թվում և Այրարատյան դաշտավայրի քաղաքները՝ Թեյշեբաինին, Էրեբունին ու Արգիշտիխինիլին:



Այրելով ու կողոպտելով քաղաքի հյուսիսարևմտյան անպարիսպ թաղամասերը, թշնամին ճեղքեց առաջին ամրությունները և իր գրոհային ջոկատները կուտակեց հյուսիսային դարպասների մոտ, քանի որ այն համեմատաբար ավելի հարմար էր ավերող գործիքներ, քարանետ սարքեր մոտեցնելու համար: Քաղաքի պաշտպանները բարձր պարիսպներից տեսնում էին, թե ինչպես են այրվում աղքատ թաղամասերը: Հրդեհն այնպես ուժեղ էր, որ հում աղյուսե տները կարմրավուն էին դարձել: Ծուխով կրակը ներթափանցում է նաև բուն քաղաք: Թշնամին այրվող նետերի տարափ է տեղում: Մեկը մյուսի հետևից այրվում են հարուստ քաղաքացիների տները, տաճարներն ու պալատները, մթերքների պահեստները: Թշնամու նետերը ջարդվում են պաշտպանների վահանների վրա, բայց շատերին էլ խոցում են: Մարտը երկարում է: Քաղաքում խուճապ է սկսվում: Վերջապես թշնամին վայրագ ճիչերով հյուսիսային դարպասներից ներս է խուժում արևմտյան բերդ: Մարտը շարունակվում է արդեն ամրոցի ներսում, փողոցներում, ամեն տան մոտ: Քաղաքն ի վերջո ընկավ:



Հնագետների ջանքով բացվեցին ավելի քան երկուսունկես հազարամյակ առաջ տեղի ունեցած անլուր ողբերգության պատկերները: Մետաղագործի տանը հայտնաբերվեցին սպանված կնոջ և երեխայի կմախքներ: Շենքերից մեկի միջանցքի ծայրին գտնվեց սպանված կնոջ կմախք: Նա երևի սպասավորներից էր կամ աղքատ թաղամասի բնակիչ, քանի որ վզին, ձեռքերին և ոտքերին պահպանված զարդերը շատ հասարակ էին: Նրանից քիչ հեռու, միջին չափի կարասի մեջ գտնվել է մոտ տասներկու տարեկան աղջկա կմախք: Աղջիկը հավանաբար թաքնվել է կարասում, վախից կծկվել, դեմքը ձեռքերով ծածկել, բայց թշնամին նրան չի խնայել, ինչպես չի խնայել նաև բրոնզագործի տան մեկ տարեկան երեխային:



Արգիշտիխինիլիի անկման ճշգրիտ ամիսը որոշելու համար օգնության եկան դեղագործի տանը հայտնաբերված կենդանիների մնացորդները. գայլի և աղվեսի ձագուկները վեց ամսական էին. գայլերն ու աղվեսները սերունդ են տալիս մարտ-ապրիլին, գումարելով վեց ամիս, ստացվում է օգոստոս-սեպտեմբեր:

Այսպիսով, հնագետներին հաջողվեց որոշել քաղաքի կործանման ճիշտ ժամանակը՝ օգոստոսի վերջ, սեպտեմբերի սկիզբ: Էրեբունու և Թեյշեբաինիի պեղումները ևս ապացուցեցին, որ Այրարատյան աշխարհի այս մեծ քաղաքները ավերվել են միաժամանակ:



Վանի թագավորության անկումից հետո մ. թ. ա. 4-րդ դարի վերջերին Երվանդունի Հայոց արքաները Արգիշտիխինիլիի տեղում, հատկապես նրա արևելյան բլրի վրա, կառուցեցին իրենց նոր մայրաքաղաք Արմավիրը՝ իր միջնաբերդով ու մեհյաններով, պալատական համալիրներով: Ծուտով Արմավիրը տարածվում է բլրի շուրջը, գոյանում են բընակելի նոր թաղամասեր ու այգիներ:

Քաղաքի հիմնադրումն ու անվան ծագումը Մովսես Խորենացին կապում է ոչ թե Երվանդունիների, այլ Հայկ Նահապետի Արամայիս թոռան հետ: Պատմահոր ասելով մեր նախահայրերից Արամը հինգ բյուր քաջ աղեղնավորով Հայոց սահմանների մոտ ճակատ է տալիս մեդացիների բանակին: Մեդացիները մինչ այդ ոտի տակ էին տվել Հայաստանը և երկու տարի ենթարկել իրենց: Արամը արևածագից առաջ, անակնկալ հարձակվում է բազմամբոխ թշնամու վրա, լավ ջարդ տալիս և նրանց առաջնորդ Նյուքար Մադեսին գերեվարում Արմավիր և այնտեղ նրա ճակատին երկաթե ցից խփելով գամում պարսպի աշտարակի ծայրին:

Մայրաքաղաք դառնալուց հետո, Արմավիրը վերածվում է պետական, ռազմական, մշակութային և պաշտամունքային խոշոր կենտրոնի: Հունական գրականության առաջին նմուշները հանդիպում են հենց Արմավիրի արձանագրություններում: Պարզվում է, որ դեռևս մ. թ. ա. 3—2-րդ դարերում Հայաստանում ծանոթ էին Հեսիոդոսի երկերին և Եվրիպիդեսի ողբերգություններին:

Արմավիրում կային բազմաթիվ մեհյաններ ու պաշտամունքի այլ օջախներ: Այնտեղ կանգնեցված էին հեթանոս հայերի բագինները ու Ասիայից բերված Արտեմիդի և Ապոլոնի պղնձաձույլ արձանները: Քաղաքի մոտակայքում էր Արամանյակի Սոսյաց անտառը, որի ծառերի տերևների սոսափյունով քրմերը գուշակություններ էին անում:

Առևտրական ճանապարհների խաչմերուկում գտնվելը նպաստել է, որ այստեղ խիստ զարգացում ապրեն առևտուրը, արհեստները ու արվեստները: Քաղաքի արհեստավորների ձեռակերտերը հասնում էին մինչև Կովկաս, Իրան, Միջագետք ու Ասորիք, Միջերկրականի և Սև ծովի ափերը: Այնտեղից էլ դեպի Արմավիր էին հոսում բազմաթիվ ու բազմապիսի ապրանքներ:

Բայց Արմավիրի փառքը շուտ խամրեց: Պատճառը, Խորենացու ասելով, այն էր, որ Արաքս գետը փոխել էր իր հունը և դրանով զրկել քաղաքը ջրից. «...և ձմեռն երկարելիս, երբ հյուսիսային ցուրտ քամիներ էին փչում, վտակը սառչում էր բոլորովին, և թագավորանիստ տեղի համար խմելու բավական ջուր չէր ճարվում: Սրանից Երվանդը նեղվելով, մանավանդ ավելի ամուր տեղ փնտրելով՝ արքունիքը տեղափոխում է դեպի արևմտյան կողմը...» Բայց, ինչպես նշում են հետազոտողները, մայրաքաղաքի տեղափոխումը ավելի շատ քաղաքական բընույթ ուներ:

Երվանդունի արքայատան վերջին թագավոր Երվանդը (մ. թ. ա. 220—200) Արմավիրից մայրաքաղաքը տեղափոխում է արևմուտք՝ Երասխաձոր գավառը, հիմնադրում Երվանդաշատը: Իր հետ տանում է ոչ միայն պալատների ողջ հարստությունն ու գանձը, այլև արձանները ու բագինները:

Արմավիրը դրանից հետո էլ շարունակում է գոյատևել իբրև Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը: Այն ծանոթ էր նույնիսկ հույն նշանավոր աշխարհագիր Պտղոմեոսին (90—168 թթ.): Մինչև մեր թվականության 4-րդ դարը քաղաքն ապրեց վերելքներով ու վայրէջքներով հարուստ կյանք, բայց այդ դարից սկսած՝ անդարձորեն գնում էր դեպի լքում ու մոռացում: Մանավանդ որ Արարատյան դաշտավայրում Արմավիրին մրցակից կային այլ նշանավոր քաղաքներ և առաջին հերթին Արտաշատը, ապա և՝ Վաղարշապատը: Իսկ մոնղոլական արշավանքներից հետո, 13-րդ դարից սկսած, քաղաքն անմարդաբնակ դարձավ: Ժամանակի ավերիչ ձեռքը, երկրաշարժերն ու ասպատակիչները Հայոց երևելի մայրաքաղաքի նշանավոր կոթողներից, պարիսպներից ու պալատներից շատ քիչ բան թողեցին:

Արմավիրի անկումից հարյուրամյակներ անց, Հյուսիսային Կովկասի չերքեզական գյուղերում ապրող հայերը հիմնելով նոր քաղաք, 1848-ին անվանեցին Արմավիր, ի հիշատակ հայոց մեծ ու փառավոր մայրաքաղաքի:

Արդեն մեկուկես տասնամյակ է, ինչ Արմավիրի բլրի վրա հնագետները պեղումներ են կատարում և նորանոր արժեքավոր հայտնագործություններով հարստացնում մեր պատկերացումները քաղաքի մասին: Հողը դեռ այնքան գաղտնիքներ է թաքցնում, որոնք լույս աշխարհ ելնելով հնարավորություն կտան գրել Հայոց Արմավիր մայրաքաղաքի ամբողջական պատմությունը:





Դեռևս մեր թվարկությունից առաջ 4-րդ դարում Արիստոտելը իր աշխատություններից մեկում նշել է, որ եթե լավ մթնեցված սենյակի մի պատի վրա արվի մի փոքր ճեղք, որով անցնի լույսի շատ նեղ փունջը, ճեղքին հակադիր պատի վրա կառաջանան ճեղքի առջևում՝ սենյակից դուրս գտնվող առարկաների ու մարդկանց պատկերները: Իսկ հռոմեացի ճարտարապետ Վիտրուվիուսը (1-ին դար մ. թ. ա.) խորհուրդ էր տալիս նկարչական պատկերասրահները կառուցել այնպես, որ նրանց պատուհանները նայեն դեպի հյուսիս: Այդ դեպքում, ինչպես պնդում էր նա, նկարները կարող են երկար պահպանել նրբերանգների թարմությունը և գույների պայծառությունը: Իհարկե, այս երևույթները բացատրելու ոչ մի փորձ չի արվել հին աշխարհի մտածողների կողմից:

Արհեստական մութ խուցը նկարագրել և օգտագործել է առաջին անգամ հանճարեղ նկարիչ Լեոնարդո դա Վինչին (15-րդ դար), բայց դեռ բավական հեռու էր այն պահը, երբ ֆիզիկայի ու քիմիայի բնագավառում կատարված հայտնագործությունների շնորհիվ մութ խուցը կդառնար այն մոգական արկղը, որի մեջ պետք է ստացվեր առաջին լուսանկարը:

Լուսանկարչության գյուտի հայտնագործման պատմությունը կապված է երեք անունների հետ: Դրանք են ֆրանսիացիներ Ժոզեֆ Նիսեֆոր Նյեպսը (1765—1833), Լուի Ժակ Մանդե Դագերը (1787—1851) և անգլիացի Վիլյամ Հենրի Ֆոքս Թալբոտը (1800—1877):

1839 թվականի հունվարի 7-ին Փարիզի գիտությունների ակադեմիայի քարտուղար Արագոն ակադեմիայի նիստում բանավոր հայտարարեց, որ գյուտարար Դագերը



Արևմտագերմանացի մասնագետները ընտեղծել են էլեկտրոնային համակարգ, որը հսկում է գրամեքենայի մեքենագրած տեքստի ճշտությունը: Ըստ էության սա էլեկտրական մեքենագրող գրամեքենա է, որ միացված է էլեկտրոնային հաշվիչ մեքենային:

· ԷՀՄ-ի հիշողության մեջ գրանցված են բժշկական տերմիններ, քանզի բժշկական տեքստերում սխալները կարող են վտանգավոր հետևանքներ ունենալ: Գրամեքենան ընտուգում է տպագրվող յուրաքանչյուր բառը

հայտնագործել է մի եղանակ, որի օգնությամբ կարողացել է պահպանել մութ խցի մեջ տեղադրված և հատուկ քիմիական նյութերով մշակված էկրանների վրա առաջացող օպտիկական պատկերները, ավելի ճիշտ՝ այդ պատկերների հետքերը: Այդ երևույթը իսկական սենսացիա առաջացրեց: Առանց վրձնի ու ներկի օգնության ստացվող նկարների մասին լուրը այդ ժամանակներում թըռչում էր հրաշք: Եվ դա էր պատճառը, որ լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ աշխարհում: Եվ փաստորեն 1839 թվականի հունվարի 7-ը դարձավ լուսանըկարչության ծննդյան օրը, իսկ Լուի Ժակ Մանդե Դագերը՝ նախկինում թատերական նկարիչ-դեկորատորը, հայտնագործությունը «կնքեց» իր անունով՝ դագերոտիպիա:

Անգլիացի ֆիզիկոս Թալբոտը 1841 թվականի փետրվարին նույնպես կարողացավ պատենտ ստանալ լուսանկարչության գյուտի համար: Նա ապացուցեց, որ իր հայտնագործած պրոցեսը դրականորեն տարբերվում է դագերոտիպիայից: Դագերի եղանակով յուրաքանչյուր լուսանկար ստացվում էր մեկ օրինակից, իսկ Թալբոտի եղանակով նախ ստացվում էր նեգատիվը, որից հետագայում կարելի էր ցանկացած քանակությամբ համարժեք օրինակներ ստանալ: Եվ այսօրվա լուսանկարչությունը ոչ թե Դագերի, այլ Թալբոտի երկաստիճան պրոցեսի կատարելագործման արդյունքն է:

Եվ վերջապես, այս պատմության մեջ ի՞նչ դեր է խաղացել Ժոզեֆ Նիսեֆոր Նյեպսը՝ մի մարդ, որը ոչ միայն հետմահու իրավունք նվաճեց համարվելու լուսանկարչության գյուտի երեք հեղինակներից մեկը, այլև իրավամբ նրան է պատկանում հայտնագործության առաջնեկությունը: Նյեպսի կենսագիրներից ոչ ոք ճշգրիտ չգիտե, թե որ թվականից նա սկսեց զբաղվել լուսանկարչության գյուտով, բայց մոտավորապես հայտնի է, որ գյուտարարը իր 68-ամյա կյանքի մոտ չորս տասնամյակը նվիրեց դրան և, վախճանվելով կարիքի մեջ, այդպես էլ չըհասցրեց վայելել գյուտարարի փառքը:

Ինչևէ, 1829 թվականին Նյեպսը հանդիպեց Դագերին: Նրանք սկսեցին աշխատել միասին: Նյեպսի մահից հետո Դագերը մոտ 6 տարի հետազոտությունները մենակ շարունակեց: Զնայած չի կարելի բոլորովին անտեսել Դագերի պրպտումները, բայց պետք է ասել նաև, որ նրան օգնում էր այն հսկայական փորձի իմացությունը, որ կուտակել էր նրա վախճանված գործընկերը: Ճիշտ է, 1839 թվականի հունվարի 7-ի հայտնի ելույթում Արագոն տվեց նաև Նյեպսի անունը, բայց ոչ ոք, կարծես, դա չնկատեց և ամբողջ փառքը վայելեց Դագերը, երբեմն գիտակցաբար, երբեմն անգիտակցաբար նպաստելով, որ մոռացվի Նյեպսի անունը:

Միայն տասնամյակներ անց, երբ մարել էին կրքերը, ամեն ինչ աստիճանաբար սկսեց ընթանալ ճիշտ հունով: 1866 թվականին այն տան պատին, որտեղ ապրել էր Նյեպսը, փակցվեց ցուցանակ, հետևյալ մակագրությամբ. «Այս տանը 1822 թվականին Ն. Նյեպսը հայտնագործել է լուսանկարչությունը»: Իսկ 1885 թվականին Շալոնի հրապարակներից մեկում դրվեց Նյեպսի արձանը:

Եվ այսպես, Նյեպս, Թալբոտ և Դագեր: Ահա այն երեք երախտավորները, որոնց անունների հետ են կապված լուսանկարչության առաջին քայլերը:

ՎԱՆ ԱՐՅԱՆ

և միայն դրանից հետո է թույլ տալիս այն փոխանցել թղթի վրա: Սա տեղի է ունենում այնքան արագ, որ մեքենագրուհին համարյա չի էլ նկատում հապաղումը: Եթե բառը ԷՀՄ-ն իր հիշողության մեջ չի գտնում, ազդանշանի միջոցով հայտնում է մեքենագրուհուն: Եթե մեքենագրուհին հաստատում է գրվածի ճշտությունը, մեքենան հասկանում է, որ հանդիպել է նոր բառի, անծանոթ տերմինի և թույլ է տալիս այն անցկացնել թղթի վրա՝ միաժամանակ գրանցելով նոր բառն իր հիշողության մեջ:



Ժենշենը բազմամյա խոտաբույս է, 50 սմ բարձրությամբ, թաթաձման, երկարակոթուն տերևներով:

Վայրի ժենշենը հազվադեպ հանդիպող, չափազանց արժեքավոր բույս է: Տարածված է Չինաստանի հյուսիսարևելյան մասերում, Հյուսիսային Կորեայում, Պրիմորսկի և Խաբարովսկի երկրամասերում:

Դեռևս 4000 տարի առաջ ժենշենը հրաշագործ բուժիչ միջոց էր համարվում և չափազանց թանկ էր գնահատվում: Ահա թե ինչու, ամենուրեք փնտրում էին այդ հըրաշագործ արմատը, շատ հաճախ կորչելով անծայրածիր տայգաներում և զոհ գնալով ավազակներին, կողոպտիչներին ու գազաններին: Չինական կայսրը և ազնվականները իրենց ձեռքն էին վերցրել ժենշենի մթերման գործը, հասարակ մարդկանց արգելելով զբաղվել դրանով:

Ժենշենի հայթայթման ամենահայտնի վայրը 19-րդ դարում համարվում էր Ուսուրական երկրամասը: Արմատ որոնողները տայգա էին մեկնում միայնակ, խմբերով կամ երբեմն՝ ուժեղ պահակախմբերով: Նրանք հրեշավոր տանջանքներ էին կրում, օրերով ու շաբաթներով թափառում վըտանգներով լի անտառներում:

Ռուս ճանապարհորդ գիտնական Վ. Կ. Արսենևը պատկերավոր է նկարագրում այդ մարդկանց. «... զարմանալ կարելի է չինացիների համբերության և դիմացկունության վրա, տեսնելով, թե ինչպես են նրանք ցըրցոտիների մեջ, սոված ու տանջահար, բազմաթիվ վերքերով ծածկված, հոգնատանջ անցնում տայգայի խուլ տարածություններով, որտեղ իսպառ բացակայում են բոլոր տեսակի ճանապարհները: Քանի՜ մարդ է կործանվել սովից ու ցրտից, քանի՜-քանիսն են մոլորվել ու անհետ կորել, քանի՜սի՜ն են հոշոտել գազանները: Եվ, համենայն դեպս, որքան ավելի շատ էին զըրկանքները, վտանգները, որքան ավելի մըռայլ ու անհյուրընկալ էին լեռները, որքան ավելի խուլ էր տայգան և որքան շատ էին վագրերի հետքերը, այնքան ավելի մեծ չա-




## «ՃԱՌԱԽՕՍՈՒԹՅԱՆ» ՌԵԿՈՐԴ

«Ճառախոսության» ռեկորդի հիմնադիրը ֆըրանսիացի փաստաբան Լուի Բեռնարդն է (1788—1858): Նա 120 ժամ անընդմեջ խոսել է, որպեսզի փրկի իր պաշտպանյալի կյանքը:

Գեներալ Ժան Տրավոն 1816 թվականի մարտին դավաճանության մեղադրանքով դատապարտվել էր մահվան: Փաստաբանը խնդրեց վճռի ի կատար ածումն հետաձգել՝ մինչև թագավորը քննի մեղադրյալի վճռաբեկ գանգատը: Դատը տեղի էր ունենում Ռենում, Վերսալից երկու և կես օրվա ճամփա հեռու: Փաստաբանի խընդրանքը մերժեցին: Այդ ժամանակ նա իր պաշտպանյալին արդարացնող փաստարկներ բերելու թույլտվություն խնդրեց: Դատարանը համաձայնեց: Փաստաբանն սկսեց իր ճառը, որը տևեց հինգ օր: Դատավորները նրան փոխնեփոխ էին լսում: Այդ ընթացքում մեղադրյալի կինը կարողացավ հասնել Վերսալ, ներում ձեռք բերել և վերադառնալ:

փով էին չինացի որոնողները նետվում տայգա»։

Որոնողները տայգա էին դուրս գալիս բունիսի սկզբից և մնում էին այնտեղ մինչև առաջին սառնամանիքները։ Նրանք բոլորն էլ համոզված էին, որ արմատը հայտնըվում է միայն մաքուր, ազնիվ ու անմեղ մարդկանց։

Երկար օրերի տանջալից, զրկանքներով լի որոնումներից հետո վերջապես գտնելով ցնվիրական բույսը, չինացի որոնողը ձեռնափայտը մի կողմ էր նետում և կատարում ավանդական ծիսակատարությունը, որից հետո միայն մեծ զգուշությամբ փորում հանում էր նվիրական արմատը։

Հասուն արմատը հանելուց հետո, խնամքով փաթաթում էին խոնավ մամուռով և տեղավորում կորեական մայրու կեղևից պատրաստված հատուկ տուփի մեջ։ Այսպիսով, որոնողը տեր էր դառնում մի ողջ կարողության։ Սակայն առջևում դեռևս փորձություններով լի տունդարձի ճանապարհն էր, ո՛չ պակաս վտանգավոր, քանի որ «որսորդների որսորդները»՝ արյունարբու խունխուզները դարանակալում էին նրանց և, սպանելով, տիրանում թանկարժեք արմատներին։ Այդ արգելքն անցնելուց հետո նըրանց սպասում էին խաբեբա վաճառականները, որոնք ձգտում էին էժան գնով ձեռք բերել հրաշագործ արմատները։ Չինաստանի շուկաներում ժենշենի արմատների համար վճարում էին ոսկի՝ քաշի կրկնակի կամ եռակիի չափով։ Արտակարգ խոշոր արմատները գնահատվում էին ճիշտ այնպես, ինչպես խոշոր ադամանդները և ունեին իրենց հատուկ անունները։

Ժենշենը բավական երկար է ապրում։ Հարյուր տարեկան բույսեր շատ հաճախ են հանդիպում։ 1956 թ. գտնվել է մի բույս, որի տարիքը մասնագետների կարծիքով անցնում էր 300-ից։

Արմատի միջին քաշը 20—30 գրամ է։ Հայտնի է 400 գրամ քաշ ունեցող մի արմատ։ 1905 թվականին, Ռուսաստան երկաթուղու շինարարության ժամանակ հայտնաբերվեց 200-ամյա ժենշենի արմատ, որի քաշը ռեկորդային էր՝ 600 գր։

Ժենշենը պարունակում է մեծ քանակությամբ ֆիզիոլոգիապես ակտիվ նյութեր՝ պանաքսին, պանաքսային թթու, պանակվելեն, պանացին, գինզենին։ Նրա արմատից պատրաստած պրեպարատները, հատկապես սպիրտային թրմօղին, փոշին կամ դեղահաբերն օգտագործում են որպես օրգանիզմի տոնուսը բարձրացնող միջոցներ, հատկապես հիպերտոնիայի, գերհոգնածության, հյուծվածության, նյարդաթուլագրության դեպքում։ Ժենշենը փաստորեն նպաստում է օրգանիզմի տարբեր համակարգերի գործունեությանը, ուժեղացնում շնչառական ֆունկցիան, լայնացնում արյունատար անոթները, իջեցնում արյան ճնշումը։

Մասսայական օգտագործման հետևանքով ժենշենի պաշարներն արագորեն սկսեցին սպառվել։ Այդ պատճառով Հյուսիսային Կորեայում, Չինաստանի հյուսիս-արևելքում, Պրիմորիեում ստեղծվեցին ժենշենի պլանտացիաներ, որոնց տեղը և մշակման մասշտաբները խիստ գաղտնի էր պահվում։

Ներկայումս Հեռավոր արևելքում ստեղծվել են այդ բույսի հսկայական պլանտացիաներ։ Ժենշենը մշակվում է նաև Հյուսիսային Կովկասում և Մոսկվայի մոտ, ինչպես նաև աշխարհի մի շարք բուսաբանական այգիներում։

**ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր**

---

...Հինավուրց ռեկորդը գերազանցվեց միայն 1955 թվականին, մի անգլիացու կողմից, որն անընդմեջ խոսել է 132 ժամ։ Սակայն սա միայն սպորտային նվաճում է։

Ամենից շատ լեզուների, հավանաբար, տիրապետել է Կոպենհագենի համալսարանի պրոֆեսոր Ռասմուս Քրիստիան Ռասկը (1787—1832)։ Նա խոսում էր 230 լեզվով և դրանցից մի քանի տասնյակի համար բառարաններ և քերականության դասագրքեր էր կազմել։



● Պատկառելի արտաքինով Ներո առյուծը ամերիկյան Ֆիլադելֆիա քաղաքում ինչ-որ մաշկային հիվանդության հետևանքով կորցրեց իր շքեղ բաշը: Պարզվեց, որ նրա ցեղակից հարևանները չեն հանդուրժում ճաղատ առյուծների և նրա հանդեպ տրամադրվել են մարտականորեն...

Կենդանիների հոգեբանության մասնագետների խորհրդով Ներոյի համար պատրաստվեց արհեստական բաշ, կեղծամի պես մի բան: Նա թույլ տվեց, որ կեղծամը հագցնեն գլխին, և բարիդրացիական հարաբերությունը առյուծների միջև վերականգնվեց: Բայց ցավն այն է, որ առյուծ արքայի կեղծամը ժամանակ առ ժամանակ անհրաժեշտ է հանել ու լվանալ, իսկ կենդանաբանական այգու ծառայողներից ոչ մեկն այդ բանն անելու ցանկություն չունի:





● 1980 թվականի գարնանը շվեյցարական Նորշյոպինգ քաղաքի կենդանաբանական այգուց փախավ մի կենգուրուի ձագ: Նրան փնտրեցին ամբողջ կես տարի, բայց ապարդյուն: Սկսեցին հավատալ, որ անկարգ ձագուկը ինչ-որ ձևով զոհ է գնացել անտառի օրենքներին, բայց սկանդինավյան ցուրտ աշունը ավստրալիական կենդանուն ստիպեց դուրս գալ անտառից և պաշտպանություն որոնել մարդկանց մոտ: Կենգուրուն ինքը մի օր հայտնվեց գյուղերից մեկում: Փախստականին բռնեցին և ուղարկեցին ետ՝ գազանանոց:

Անսանաբույժներին ամենից ավելի զարմացրել էր այն, որ գազանիկի առողջությունը հիանալի էր: Հավանորեն կենգուրուն եղևնուտում, որտեղ թաքնվում էր, սննդի պակաս չի զգացել:

● Ինչպես հայտնի է՝ Անգլիայում, ԱՄՆ-ում և մի շարք այլ երկրներում վերածնվում է աղավնիների միջոցով փոստային առաքումներ կատարելու ծառայությունը: Ավտոճանապարհների անվերջ խցանումների պատճառով աղավնիներն իրենց գործն անում են շատ ավելի արագ, քան նույնիսկ մոտոցիկլետավոր սուրհանդակները:

Ամերիկացի կենդանաբան Լի Ֆարմերը պնդում է, որ այդ նպատակին ավելի լավ են ծառայում վարժեցված բադերը: Կենդանաբանը մի քանի տարի բադերին վարժեցնելուց հետո համոզվել է, որ նրանք ճշգրտորեն ու խնամքով հեռավոր շրջաններ են հասցնում օդերևութաբանական տեղեկություններ և այլ գիտական ինֆորմացիա, իսկ լրագրերի խմբագրություններին՝ ֆոտոժապավեններ: Գիտնականը հնարավորություն է ունեցել համոզվելու, որ աղավնիների համեմատությամբ բադերն ավելի արագաթիռ են, որ նրանց կողմնորոշման զգացողությունն ավելի լավ է զարգացած, բացի այդ՝ չեն վախենում վատ եղանակից ու մթությունից:



ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# ԶՈՐԱՎԱՐՆ ՈՒ ՓԻԼԻՍՈՓԱՆ



Պատմում են, թե՝ երբ մի անգամ այցաբացին,
Պատերազմից ետ էր դառնում հաղթանակով
Մեծ զորավար Ալեքսանդր Մակեդոնացին,
Տեսավ ահա, որ պատի տակ մի արևկող
Նստել է լուռ մեծահամբավ փիլիսոփան,
Եվ արևի շողքը նոր է դիպել վրան:
Սանձեց իր ձին զորավարը, հպարտ կանգնեց
Եվ ծերունու վրա երկա՜ր ստվեր գցեց,
— Ողջու՜յն,— ասաց,— ո՛վ իմաստուն Դիոգենես,
Հաղթանակով տուն եմ դարձել ռազմավայրից,
Աշխարհակալ մի արքա եմ հռչակվել ես,
Ի՞նչ կուզեիր նվիրեմ քեզ իմ ավարից:
— Ինչի՞ս են պետք կովով խլած այդ գանձերը,
Քո ավարը թող քե՛զ մնա,— ասաց ծերը,—
Ես... խնդրում եմ, մի կողմ քաշվիր քո նժույգով
Ու մի՛ կտրի լույսն արևի քո շվաքով...

— Կեցցե՛ս,— ասաց զորավարը հռչակավոր,
Որ փայլում էր իմաստությամբ ինքը նույնպես,—
Չլինեի թե ես արքա Ալեքսանդր,
Կուզենայի լինել անմահ Դիոգենես:





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հանձնված է արտադրության 10.12.1982 թ.։ Ստորագրված է տպագրության 17.2.1983 թ.։ ՎՖ 11241։ Թուղթ օֆսեթ, $70 \times 100^1/_{16}$։ Տառա տեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ, մամ.։ Տպաքանակ՝ 70070։ Պ ատ. 2612։ Գինը՝ 15 կ.։

Сдано в набор 10.12.1982 г. Подписано к печати 17.2.1983 г. Формат $70 \times 100^1/_{16}$. ВФ 11241. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 70070. Заказ 2612. Цена 15 коп.

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## №: 2 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկի 1-ին և 4-րդ էջերը
ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ

ԻՆԴԵՔՍ 77806





Գինը 15 կոպ.